ИНСТИТУТ ДРЕВНИХ РУКОПИСЕЙ ИМЕНИ МАШТОЦА
«МАТЕНАДАРАН»
ПРИ СОВЕТЕ МИНИСТРОВ АРМЯНСКОЙ ССР

# ВАРДАН АРЕВЕЛЦИ

## ТОЛКОВАНИЕ ГРАММАТИКИ

*Текст подготовил и снабдил предисловием*

*Л. Г. ХАЧЕРЯН*

ИЗДАТЕЛЬСТВО АКАДЕМИИ НАУК АРМЯНСКОЙ ССР

ЕРЕВАН 1972

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ
«Մ Ա Տ Ե Ն Ա Դ Ա Ր Ա Ն»

# ՎԱՐԴԱՆ ԱՐԵՒԵԼՑԻ

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՔԵՐԱԿԱՆԻ

*Աշխատասիրությամբ՝*
*Լ. Գ. ԽԱՉԵՐՅԱՆԻ*

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1972

«Մեկնութիւն քերականի» աշխատությունը Վարդան Արևելցու մատենագրական ժառանգության արժեքավոր երկերից է, որն ստեղծվել է, իբրև արքայական պատվեր, 1244—1246 թվականներին՝ Կիլիկիայում, Հեթում Ա թագավորի խնդրանքով։ Որպես քերականական դասընթացի ձեռնարկ այն բազմացվել է մի շարք ընդօրինակություններով և լայն կիրառություն է գտել ինչպես Կիլիկյան Հայկական թագավորության տարածքի վարդապետարաններում, այնպես և պատմական Հայաստանի ուսումնագիտական կենտրոններում։

Վարդան Արևելցու սույն աշխատությունը, համապատասխան ուսումնասիրությամբ ու ծանոթագրություններով; առաջին անգամ գիտական շրջանառության մեջ է դրվում իբրև քննական բնագիր՝ պատրաստված 17 ձեռագրերի համադրական համեմատության հիման վրա։

Բնագրական սույն հուշարձանը կհետաքրքրի ոչ միայն լեզվաբան-քերականագետներին, այլև հայագետներին ընդհանրապես։

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

# ԱՌԱՋԱԲԱՆ

Միջնադարի հայ մատենագրության առավել ականավոր ներկայացուցիչներից է տաղանդաշատ գիտնական, մանկավարժ և հասարակական գործիչ Վարդան Արևելցին։ Նշանավոր պատմիչ, մատենագիր, աստվածաբան լինելով հանդերձ, նա եղել է նաև դպրության տեսաբան և քերական մեկնիչ։ Ընդամին՝ եթե Վարդան Արևելցին մեր մատենագրության մեջ առավելապես հայտնի է որպես XIII դարի խոշոր պատմիչ՝ Կիրակոս Գանձակեցու և Ստեփանոս Օրբելյանի հետ միասին, ապա իբրև դպրության տեսաբան և քերական մեկնիչ նույնպես կարկառուն դեմքն է իր ժամանակաշրջանի։

Սույն աշխատասիրությամբ առաջին անգամ գիտական շրջանառության մեջ է դրվում Վարդան Արևելցու «Մեկնութիւն քերականի» երկի քննական բնագիրը՝ 17 ձեռագրերի համադրական համեմատությամբ։

* *
*

Վարդան Արևելցին ծնվել է XIII դարի առաջին տասնամյակում։ Ձեռագրական աղբյուրներում նա հիշատակվում է նաև իբրև Աղվանից Վարդան[1], Վարդան Գանձակեցի, Մեծ Վարդան և Վարդան պատմիչ անուններով։ Պետք է ենթադրել, որ Վարդան Աղվանից և Վարդան Գանձակեցի անվանումները հուշում են նրա ծննդավայրը. նա բնիկ Գանձակից կամ, որ և նույնն է առավել լայն տարածքի ընդգրկմամբ՝ Աղվանական աշխարհից պետք է լինի, մանավա՛նդ, որ «Արևելցի» անվանակրումը ևս նույնն է հավաստում։ Հայագիտական գրականության մեջ, սկսած Մ. Չամչյանից[2], հաճախ է շփոթվել Վարդան Արևելցին Վարդան Բարձրբերդցու հետ, որոնք, սակայն, պատմական երկու տարբեր անձնավորություններ են. մատենագրությունից հայտնի է, որ Վարդան Բարձրբերդցին հանդես է եկել ավելի ուշ և ապրել է ավելի երկար, քան Վարդան Արևելցին. Բարձրբերդցին աշակերտել է Կիլիկիայում Հովհաննես Արքաեղբորը, մինչդեռ Վարդան Արևելցին գործել է, հիմնականում, Արևելյան Հայաստանում և իր ուսումնառությունը անց է կացրել «առ ոտս» ուսուցչապետ Վանականի[3]։ Այս ժամանակամիջոցում, երբ Վանականի դպրոցը գերե-

---

[1] Տե՛ս Յ. Տաշեան, *Ցուցակ հայերէն ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա*, Վիեննա, 1895, էջ 769, Մաշտոցի անվան Մատենադարան, ձեռ. № 1784, թ. 206ա, № 2189, թ. 292բ և այլուր։

[2] Տե՛ս Մ. Չամչեանց, *Պատմութիւն Հայոց*, Վենետիկ, հ. Գ, 1781, էջ 237, «Մեծին Վարդանայ Բարձրբերդցւոյ Պատմութիւն Տիեզերական, ի լոյս ընծայեաց Մկրտիչ Էմին», Մոսկվա, 1861, Ղ. Ալիշան, *Հայապատում*, Վենետիկ, 1901, էջ 638, *Saint Martin*, Mémoires Historiques et Géographiques sur l'Arménie, Paris, Tome 2, p. 455, *Brosset*, Analyse critique de la Всеобщая история de Vardan, St. Petersbourg, 1862, p. 2, և ուրիշներ։

[3] Վարդան Բարձրբերդցին ձեռագրական աղբյուրներում հիշվում է մինչև 1286 թվականը՝ ա՛յն դեպքում, երբ 1271 թվականին Վարդան Արևելցին արդեն վախճանվել էր։

*վարվում է մոնղոլների կողմից, Վարդան Արևելցին, Կիրակոս Գանձակեցու և մյուս ուսումնակիցների հետ միասին, ճաշակում է ասպատակողների պատճառած անլուր դառնությունները։*

*Բարձրագույն կրթության աստիճան («վարդապետական») ստանալուց հետո Վարդան Արևելցին ծավալում է ուսումնագիտական բեղմնավոր գործունեություն և կարճ ժամանակում լայն ճանաչում է գտնում ինչպես բուն Հայաստանում, այնպես և Կիլիկիայում։ 1241 թվականին ուխտագնացության է ուղևորվում դեպի Երուսաղեմ և վերադարձին անցնում է Կիլիկիա, որտեղ ջերմ ընդունելություն է գտնում Հեթում Ա թագավորի և կաթողիկոս Կոստանդին Բարձրբերդցու կողմից*[4]*։ Այստեղ նա մնում է շուրջ հինգ տարի (1242—1246 թթ.) և ծավալում գիտական ստեղծագործական ու հասարակական բուռն գործունեություն։ Վարդան Արևելցուն են աշակերտում մինչև անգամ Հեթում Ա թագավորը և նրա կին Զաբել թագուհին։ Վերջիններիս ուսումնառության համար Արևելցին հանրամատչելի ու պարզունակ լեզվով գրում է «Ժղլանք» ուսումնագիտական ձեռնարկը, որը հասարակագիտական և բնագիտական բազմաթիվ հարցերի մեկնաբանմանը նվիրված «հանրագիտարանային» բնույթի արժեքավոր մի աշխատություն է։*

*Կիլիկիայում առաջին անգամ գտնված ժամանակամիջոցում, դարձյալ Հեթում Ա թագավորի խնդրանքով, Վարդան Արևելցին գրում է «Մեկնութիւն քերականի» սույն երկը, որի վերնագրում հիշատակվում է նաև պատվիրատուն՝* **«... ի խնդրոյ թագաւորին հայոց Հեթմոյ»**, *որն իրագործում է, ամենայն հավանականությամբ, 1244—1246 թվականներին։*

*Նշված այս երկու աշխատությունների պատմական նշանակությունն ու արժեքը ընդգծվում է նրանով, որ դրանք երկուսն էլ* **արքունական** *պատվերներ են՝ հենց թագավորի և թագուհու ուսումնառության համար նախատեսված։*

*Բացի սրանցից, Վարդան Արևելցին Կիլիկիայում է թարգմանում Միխայիլ Ասորու Ընդհանուր պատմությունը՝ ասորի Իշոխ ուսումնականի օժանդակությամբ։*

*Վարդան Արևելցին վճռական մասնակցություն է ունեցել բոլոր այն գործառնություններում, որ Կիլիկիայի կաթողիկոսությունը ունեցել է մի կողմից Հռոմի պապի, մյուս կողմից Արևելյան Հայաստանի թեմերի ու «երկրների» հետ՝ համազգային նշանակություն ունեցող հարցերի վերաբերյալ։ Նա մինչև անգամ կաթողիկոսի անվամբ Հռոմի պապին հղված պաշտոնական կարևորագույն փաստաթղթերի հարցադրումներն ու ձևակերպումներն է պատրաստել, որոնցում շոշափված են դավանաբանական-քաղաքական կնճռոտ հարցեր։ Ավելին. Վարդան Արևելցին նույնիսկ մոնղոլ տիրակալների հետ վարվող բանակցություններին է մասնակցել և իր հեղինակությամբ նպաստել քաղաքական-տնտեսական որոշ հարցերի կարգավորմանը։*

*1246 թվականին Արևելյան Հայաստան վերադառնալով, իբրև կաթողիկոսի նվիրակ, Վարդան Արևելցին բոլոր թեմերի առաջնորդներին և «երևելիներին» հրավիրում է ժողովի՝ մոնղոլական տիրապետության հետևանքով խախտված հասարակական կեցությունը կարգավորելու մտահոգությամբ գրված կաթողիկոսական «Կանոնականք»-ի տակ նրանց համաձայնության ստորագրությունները ապահովելու համար։*

---

[4] *Տե՛ս* Կիրակոս Գանձակեցի, *Պատմութիւն Հայոց, աշխատասիրությամբ Կ. Մելիք-Օհանջանյանի, Երևան, 1961, էջ 294։*

Վարդան Արևելցին երկրորդ անգամ լինում է Կիլիկիայում հինգ տարի հետո՝ 1251 թվականին, և նորից կաթողիկոսական շրջաբերականով լիազորված վերադառնում է Արևելյան Հայաստան[5]։

Վարդան Արևելցու գրչին են պատկանում նաև «Պատմութիւն տիեզերական» և «Պատմութիւն թաթարաց» երկերը, որոնք կարևորագույն սկզբնաղբյուրներ են մոնղոլների ու նրանց ռազմա-տնտեսական քաղաքականության վերաբերյալ՝ Կովկասն ու Հայաստանը մոնղոլական տիրապետության տակ գտնված ժամանակաշրջանում։

Նրան է վերագրվում նաև «Աշխարհացոյց»-ը իր Ընդարձակ և Համառոտ խմբագրություններով[6], որոնք տեղագրական շատ արժեքավոր աղբյուր են հանդիսանում, հիմնականում, պատմական Հայաստանի քաղաքների, գյուղերի և մշակութային հոգևոր կենտրոնների վերաբերյալ։

Վարդան Արևելցին հեղինակ է նաև բազմաթիվ աստվածաբանական մեկնությունների, որոնք արտացոլում են ժամանակի աշխարհայացքային դրույթներն ու հարցադրումները։

Նա իր մահկանացուն կնքում է 1271 թվականին և թաղվում Խորվիրապում։

* *
*

Առաջաբան-ուսումնասիրության մեջ, գիտական անհրաժեշտությունից ելնելով, մեր առաջ խնդիր ենք դրել լուսաբանել երկու հիմնական հարց. առաջին՝ լեզվաբանական-քերականագիտական վերլուծության ենթարկելով Վարդան Արևելցու սույն երկը՝ բացահայտել մեկնողական հայ քերականագիտության զարգացման մեջ նրա ներդրումը. երկրորդ՝ բնագրագիտական քննությամբ պարզել բնագրային աղերսները նույնատիպ քերականական մեկնությունների հետ՝ մի կողմից, մյուս կողմից՝ ձեռքբերված բնագրագիտական հետևությունների հիման վրա արժեքավորել քերականական այս հուշարձանը։

## I. ԼԵԶՎԱԲԱՆԱԿԱՆ-ՀՆԶՅՈՒՆԱԲԱՆԱԿԱՆ-ՔԵՐԱԿԱՆԱԳԻՏԱԿԱՆ ՀԱՅԱՑՔՆԵՐԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

1. **Քերականության բնորոշումը իբրև գիտություն**։— Առաջին ուշագրավ և ամբողջական հայացքը Վարդան Արևելցու ա՛յն տեսակետի հավաստումն է, որ քերականությունը, որպես ուսմունք, գիտություն է։ Թրակացու այն դրույթը, որ քերականությունը իր բնույթով «հմտություն» է, Վարդան Արևելցին թեև լիովին պաշտպանում է, բայց և միաժամանակ յուրովի է մեկնաբանում այն՝ ընդլայնելով այդ հասկացությունը նոր իմաստավորմամբ. քերականությունը «հմտություն» լինելով հանդերձ նաև գիտություն է,— իրավացիորեն հաստատում է նա։ Իսկ այսպիսի ըմբռնումը շատ կարևոր է քերականության, իբրև ուսումնական առարկայի, ճիշտ գնահատման առումով, ուստի և այն սկզբուն-

[5] Տե՛ս Լ. Խաչիկյան, «Կոստանդին Բարձրբերդցու խրատական թուղթը, առաքված Արևելյան Հայաստան, 1251 թվականին» հոդվածը, «Բանբեր Մատենադարանի», № 4, 1958, էջ 267—284։

[6] Տե՛ս «Աշխարհացոյց Վարդանայ վարդապետի, քննական հրատ. Հայկ Պէրպէրեանի», Փարիզ, 1960։

քային ու տեսական նշանակություն ունի։ Մերժելով որոշ ուսումնականների տված այն մեկնությունը, ըստ որի «հմտությունը», իբր, պարզապես «ծանոթություն» կամ «տեղեկություն» է, Վարդան Արևելցին այն տեսակետն է հայտնում, որ «հմտություն» ասելով պետք է հասկանալ երևույթների մեջ թափանցելու կարողություն, որ և «ստուգաբանորեն» նույնն է թե՝ «հնմտություն», այսինքն՝ «հունի», էության մեջ մտնելը, որ և համարժեք է «գիտություն» հասկացությանը։ Հետևաբար՝ քերականությունը, ըստ Վարդան Արևելցու, ամենից առաջ գիտություն է իր բնույթով: Ընդսմին, եթե բանաստեղծների («քերդողաց») և արձակագիրների («շարագրաց») երկերում քերականական իրակությունների բացատրությունը մարդ չկարողանա «գիտունի» պես տալ, ասում է Վարդան Արևելցին, ապա նա կնմանվի «անգետ» և «անբան» անասունի և նրա վարվեցողությունն էլ կհամապատասխանի «անասունի» բնազդային՝ կամային շարժումներին, և ո՛չ՝ գիտակցական դրսևորումներին։ Տվյալ դեպքում այլաբանորեն այն միտքն է շեշտվում, որ քերականությունը իբրև հմտություն ըմբռնելիս չպետք է «հմտությունը» ընկալել իր նեղ իմաստով՝ սոսկ փորձի բազմակրկնությամբ ձեռք բերված մեխանիկական գործառնություն։ Բանն այն է, որ բնագիր ճիշտ հասկանալը իրոք գիտություն է պահանջում՝ նրա աղբյուրների բացահայտման համար։ «Առ որ ասեմք,— գրում է նա.— եթէ գիտութեամբ ասաց զարուեստն. զի թէ հարցանեն ընդ քեզ անուն կամ բայ, որ է բանի մասն, նա հմտութեամբն, որ է հնմտութիւն, որ մտեա ի յարուեստն զերդ ի գետի հուն, որ չինի հնմտութիւն[7]: Նա հնմտութեամբն զքերթողացն և զշարագրացն տաս զպատասխանին զերդ զգիտուն, ապա թէ ոչ՝ դու ի նախնեացն անգիտացն անկար ի յոճ և ի սովորութիւն ըստ անասնոցն երթալոյ ի սովորական տեղիս»[8]։ Այս առթիվ, սակայն, Վարդան Արևելցին անում է կարևոր մի վերապահություն՝ «գիտության» ըմբռնումը, իր հերթին, սահմանելով ըստ միջնադարյան փիլիսոփայական-աստվածաբանական տեսության։ Այդ ըմբռնման համաձայն՝ «գիտությունը» երկակի է. կա «կատարյալ» գիտություն, որը հատուկ է միայն գերագույն էակին (ենթադրյալ աստծուն), կա և «մասնակի» գիտություն, որը միայն մարդու վերահասության ոլորտում է գտնվում և ուղղված է նույնասեռ երևույթների ուսումնասիրելուն. իսկ քերականությունը, իբրև ուսումնակարգ, պատկանում է «մասնակի» գիտությունների շարքին։ Բացի այդ, Վարդան Արևելցին, կոնկրետաբար արտահայտվելիս, պնդում է, որ քերականությունը իբրև գիտություն բացահայտում է լեզվի իրակությունների քերականական իմաստները, դրա շնորհիվ էլ քերականության մեջ քաջահմուտ ուսումնականը կկարողանա ըմբռնել լեզվի կանոնավորությունը, հղկվածությունն ու գեղեցկությունը և մարզվել դրանցով. ընդսմին այստեղ նկատենք, որ միջնադարի մեր քերական մեկնիչները, հիմնականում, քերականության բնույթը որոշելիս ելնում են ոչ թե խոսակցական լեզվի նկատմամբ քերականության ունեցած հարաբերությունից, այլ միայն գրավոր՝ մատենագրական լեզվի նկատմամբ ունեցած աղերսակցությունից. «Եւ վասն այնոր ասի հմտութիւն,— պատճառաբանում է Վարդան Արևելցին,—

[7] Իհարկե՝ «հմտութիւն» բառի «հնմտութիւն» լինելու պնդումը ոչ թե գիտական, այլ՝ ժողովրդական ստուգաբանություն է։ Բայց տվյալ դեպքում դա էական չէ։

[8] Վարդան Արևելցու «Մեկնութիւն քերականի» երկից արված քաղվածքների հղման համար մատնացույց ենք անում ամենուրեք մեր սույն աշխատասիրության մեջ ներկայացված քննական բնագիրը։ Տվյալ դեպքում ևս՝ սույն աշխատությունը, էջ 73։

*կի կատարեալ գիտութիւնն աստուծոյ միայն է, իսկ* մարդկանս մասնաւոր միայն է գիտութիւն՝ կոած բանիւ կամ կոկ, զոր պարտ է կրթիլ ուսումնասիրացն ի բանս»[9]: *Ի դեպ, Վարդան Արևելցին մի այլ տեղ խոսքը մասնավորելով՝ բնագրերի բնույթն ու նրանցում եղած աղավաղումների և ճշտությունների գիտակցված ըմբռնումը նույնպես մարդկային «մասնաւոր գիտութիւն» է դիտում, ի տարբերություն աստվածային «գիտության», որը միայն «ընդհանուր» է.* «*Զի* աստուծոյ գիտութիւնն միայն է ընդհանուր, իսկ մարդկային գիտելս ամենայն մասնաւոր է...»[10]

*Միջնադարյան ըմբռնմամբ՝ քերականության խնդիրն է հնագույն բնագրերը (և՛ չափածո, և՛ արձակ) ճիշտ վերծանելու կարողություն արմատավորելը ուսումնականի մեջ, վերջինիս գիտական փորձ հաղորդելը՝ հնագույն բնագրերում հանդիպող աղավաղումները և ստույգ բառաձևերը տարբերելու իմաստով. իսկ դրա համար անհրաժեշտ է ունենալ հմտություն՝* դատողության վրա *խարսխված, կամ, որ նույնն է՝* դատողությամբ պայմանավորված հմտության օժտվածություն: *Ընդսմին «դատելը», Վարդան Արևելցու ըմբռնմամբ, նշանակում է «սահմանել», այսինքն՝ այս կամ այն երևույթի էական առանձնահատկությունների բնութագրմամբ որոշել տվյալ երևույթի ի՛նչ լինելը, իսկ այդ հնարավոր է՝ եթե ենթական (իմա՝ ուսումնականը), հմուտ լինելով մատենագրական երկերին, համեմատություն կատարելու կարողությամբ օժտված է միաժամանակ. «Դատելն «սահմանել» ասէ զասացուածսն,—մեկնում է Վարդան Արևելցին,— որ երբ գտնուս զումեք շարագրած, դատես՝ եթէ* ուղղափառի՞ է, թէ՞ ոչ, կամ թէ բժշկակա՞ն է, թէ՞ աստեղաբաշխական»[11]: *Իսկ բնագրագիտական հմտության պահանջը պարտադիր ու հրամայական է համարում նա ամեն մի բանասերի կամ մատենագրի համար. բնագրերի «դատումը», ասում է Վարդան Արևելցին,* «առաւել պիտանի է այս արուեստիս *(իմա՝ քերականության*—Լ. Խ.) հետևողացն և գիտողացն քան զամենայն»[12]: *Վարդան Արևելցու նման հայացքները քերականության բնույթի նկատմամբ, անշուշտ, բարձրացնում են քերականության, իբրև ուսումնական առարկայի, նշանակությունը միջնադարում։*

*Նկատենք, որ քերականության բնույթի մասին Վարդան Արևելցուց առաջ արտահայտվել են նաև Դավիթ Անհաղթը, Մովսես Քերթողը, Ստեփանոս Սյունեցին և Մագիստրոսը։ Սակայն Վարդան Արևելցին քերականության իր սահմանումով նշված հեղինակներից ավելի մոտ է կանգնած հատկապես Դավթին, մասամբ Մագիստրոսին, և փաստորեն նրանց հայացքներն է զարգացնում ու ամբողջացնում։ Դավիթը նույնպես քննադատում է բոլոր նրանց, ովքեր «հմտությունը» իբրև մեխանիկական վարժություն են ըմբռնել, և ոչ թե՝ իմացականությամբ ու գիտությամբ յուրացվող ուսմունք. «Եւ արդ քանզի նախակարգեաց սկիզբն արուեստիս ի հմտութենէ,— գրում է նա,— թուեցաւ ոմանց յանբանութիւն արկանել փոխանակ առաւել գիտութեան»[13]։ Բանն այն է, ասում է Դավիթը, որ Թրակացին իր քերականության ձեռնարկում իսկապես շարադրել է ա՛յն, ինչ հմտությամբ և իմացականությամբ էր հայտնաբերել*

[9] *Նույն աշխատությունը, էջ 73—74։*

[10] *Նույն տեղում, էջ 76։*

[11] *Նույն տեղում, էջ 75։*

[12] *Նույն տեղում։*

[13] Գ. Ջահուկյան, *Դավթի քերականական աշխատության նորահայտ ամբողջական ձեռագիր տեքստը, «Բանբեր Մատենադարանի», 1956, № 3, էջ 246։*

*հունարենի գրավոր լեզվի հրողություններից.* «Այլ նա ճշմարիտ զոր ինչ եգիտն և կարգեաց ի ճմտութենէ և ի բանաւորութենէ»[14]:

*Մովսես Քերթողը քերականությունը սահմանելիս, այն նույնացնում է «առասպելավարժության» հետ, իսկ «առասպելավարժությունը» գրաբարյան ըմբռնմամբ՝ ուրիշ բան չէ, եթե ոչ իմացություն հին առասպելների ու գեղարվեստական պատումների։ Ընդսմին քերականությունը, Մովսեսի կարծիքով, միաժամանակ բաժանվում է բաղկացուցիչ մասերի՝ ճիշտ այնպես, ինչպես հյուսնությունը՝ ստորադաս մասնագիտությունների. «Քերդողութիւն է առասպելավարժութիւն,— գրում է նա,— զի որպէս հիւսնութիւն բաժանի ըստ տեսակաց, է՛ որ աթոռագործ է, և է՛ որ տաճար շինէ, այսպէս և սա ըստ մասին բաժանի, ըստ զանազան իրաց ինչ և ձայնս ձայնս ընդունի անուանակոչութեան»[15]։ Նման հարցադրումը, անշուշտ, հեռու է քերականության բնույթը, իբրև ուսումնագիտական կարգ, որոշելուց և այն նույնացված է գրականության հետ։ Հեղինակը, փորձելով կոնկրետացնել «հմտության» ըմբռնումը, գտնում է, որ այն այլ բան չէ, եթե ոչ վիպասանական պատմության կառուցվածքային և բովանդակային կողմերի ուսումնասիրումն ու յուրացումը. «Հմտութիւն սասցին զընդելն վիպասանական պատմութեան, զոր շարագիրս անուանեն»[16]։ Այս կոնկրետացումը ևս չի բացահայտում քերականության բնույթը իբրև լեզվի օրինաչափությունների հետազոտական առարկայի և ուսմունքի։*

*Ստեփանոս Սյունեցին քերականությունը պարզապես համարժեք կամ հավասարանշանակ է համարում «գրականության», «գրական արվեստին»։ Ի դեպ, նա «գրականություն» տերմինը օգտագործում է ոչ այն իմաստով, ինչ մենք այժմ ըմբռնում ենք. այլ այն նշանակությամբ, որ վաղ միջնադարում հայ մատենագրության մեջ կիրառելիս են եղել. այն է՝ իբրև «գրելու արվեստ»։ Ստեփանոս Սյունեցին այս առթիվ գրում է. «Եւ արդ ստուգաբանեալ լինի քերականութիւն գրականութիւն»[17]։*

*Նախորդ քերական մեկնիչների համեմատությամբ Ստեփանոս Սյունեցին առանձին դեպքերում նույնիսկ նեղացնում է քերականության ըմբռնումը՝ հանգեցնելով այն սոսկ գրական երկերը առոգանության կանոնների համաձայն ճիշտ ընթերցելուն։ Նրա կարծիքով, Թրակացու՝ քերականության մասին տված սահմանման մեջ «հմտությունը» այլ բան չէ, եթե ոչ ճառերն ու պատմագրական երկերը կշռույթով ու տրամաբանական շեշտումներով վերարտադրելու ուսումնականի կարողությունը. «Եւ լինի հմտանալն ի նոսա ըստ այսքան յեղանակս. ճանաչել զյեղանակս և զվանգի չափս, յարդարելով ըստ ենթադատութեանն զզրուցատրութիւնս նոցա, և այն ըստ կարգի յարմարութեամբք և պատճառ[աւ]ք առ ի հաւատալ»[18]։ Քերականությունը, Ստեփանոս Սյունեցու ըմբռնմամբ, ծառայում է միայն նրա համար, որպեսզի գրավոր անկենդան խոսքը վեր ածի կենդանի խոսքի՝ ունկնդիրներին միանգամայն ընկալելի դարձնելու համար այն։ Հետևաբար՝ քերականությունը գրավոր խոսքը «պոետիկանացնում» է. նա այդպես էլ գրում է. «Եթե ոչ այսպէս իցէ, ոչ ընթեռնուլ զնոսա գեղեցկապէս ի լսելիս ժողովրդոց զբանս և զգործս առաջ-*

---

14 *«Բանբեր Մատենադարանի», № 3, էջ 247։*

15 *Н. Адонц*, Дионисий Фракийский и армянские толкователи, Петроград, 1915, стр. 159։

16 *Նույն տեղում։*

17 *Նույն տեղում, էջ 184։*

18 *Նույն տեղում։*

նոցն և կամ թե զաստուածոցն։ Եւ ինքեանք ըստ հրամայեալ յեղանակս սորա արասցեն ստեղծումն բանի պոետիկոսաբար»[19]։

Մագիստրոսը, Ստեփանոս Սյունեցու հետևողությամբ, նույնպես քերականությունը սահմանում է որպես գրականություն։ Հարց է ծագում. ինչո՞ւ քերականությունը միաժամանակ գրականություն է համարվում Մագիստրոսի և մյուսների հայեցակետով. ո՞րն է դրանց նույնացման հիմունքը։ Մագիստրոսը այս հարցադրմանը պատասխանում է հետևյալ փաստարկմամբ, որ չունի Ստեփանոս Սյունեցին. քերականությունը բանականության քննությամբ արտաքսում է գրավոր խոսքի ստույգ, վճիտ և անսխալ ձևերը այնպիսի բյուրեղացումով՝ ինչպես քուրայի բովով զտում են «մաքրագույն և հրատեսակ ոսկին». «...գրականութիւնս այս վասն այնորիկ կոչեցաւ քերականութիւն, զի ի բանականէ աստի զվճիտն և զմաքուրն և զամենին առանց բծի և կարծեցն արտաքս բերել իբրու ի ք[ու]րայէ զմաքրագոյնն և զհրատեսակն ոսկի...»[20]։ Ավելին. քերականությունը բնութագրվում է որպես ուղեցույց գիտության և լույսի, կամ ուղիղ ճանապարհ, որ տանում է, առանց խարխափումների, դեպի արքունի պալատը։ Մագիստրոսի մոտ այս առնչությամբ կարդում ենք. «Անուանեցին զնա քերականութիւն և իբրև զարձան ի մահարձանաց կամ զաշտարակ կանգնեալ կամ եթէ նպատակս ինչ և դրոշուածս ի ճանապարհի հաստատեալ, զի ծանիցեն զճանապարհն ուղեղ և այնու ոչ մոլորեալք երթիցեն ի պաղատն արքունի և մի՛ խոտորեսցին»[21]։ Բայց առավել բնութագրականն այն է, որ քերականությունը դիտվում է որպես բոլոր գիտությունների դուռը՝ ներածությունը. «Այսպէս քերականութեամբս մտանել յամենայն արհեստս իմաստասիրութեան պարտ է»[22],—գրում է Մագիստրոսը։

Սակայն այս համեմատություններում առկա է երկփեղկվածություն քերականության բնույթի ըմբռնման կապակցությամբ. մի դեպքում նույնացվում է քերականությունը գրականության հետ, մյուս դեպքում՝ սահմանազատվում է նրանից իբրև ուրույն բնագավառ, այն է՝ որպես ուսմունք լեզվի միավորների ստույգ ձևերի մասին։ Հենց այս երկրորդ ըմբռնումն է ճիշտ քերականության բնույթի վերաբերյալ, որը և հետագայում հաղթանակում և տիրապետող հայեցակետ է դառնում հայ քերականագիտության մեջ, ըստ որում այս տեսակետն էլ պաշտպանում ու զարգացնում է Վարդան Արևելցին՝ քերականության, իբրև ուսումնակարգի, իր սահմանումով։

2. Հնչյունաբանական դիտումներ։— Քերական մեկնիչներից Վարդան Արևելցին է, որ հայերեն գրերի քանակային շատությունը բացատրում է, բացի լեզվի հնչույթային կողմի «հարստության» հանգամանքից, բարբառային խոսվածքների առատությամբ՝ դեռևս մեսրոպյան ժամանակաշրջանում. «Իսկ բազմութիւն հայկական գրոցս երկու պատճառս ունի,— գրում է Վարդան Արևելցին,— առաջինն՝ զազգացն զկորնայսն, այսինքն՝ զբազմութիւն հայոց լեզուիս զծռութիւն և զթոթովախաւութիւն գնչատաց։ Երկրորդ պատճառն՝ լեզուիս ճարտութիւն»[23]։ Նշենք սակայն, որ Վարդան Արևելցու մեկնության առաջին պատճառաբանությունը գիտական առումով համոզիչ չէ, քանի՛ որ

19 Ն. Ադոնց, նշված աշխատ., էջ 184։

20 Նույն տեղում, էջ 285։

21 Նույն տեղում, էջ 225։

22 Նույն տեղում, էջ 226։

23 Սույն աշխատությունը, էջ 84։

նման պնդումը ճիշտ չի բացահայտում մաշտոցյան գրահամակարգի ունեցած միավորների անպայման տվյալ քանակի անհրաժեշտությունը։

Վարդանից առաջ Դավիթն է անդրադարձել մաշտոցյան գրահամակարգի միավորների «շատության» խնդրին. վերջինս մի դեպքում դրա պատճառը փորձում է մեկնաբանել «անարուեստ խօսքի» և «այլալեզու խոսվածքի» («բարբարիկոն լեզուի») առկայությամբ դեռևս V դարում, մյուս դեպքում՝ «թավ» հնչույթների առկայությամբ դարձյալ այդ ժամանակաշրջանի խոսակցական լեզվում։ «Բայց բազմութիւն գրոյս,— ասում է Դավիթը,—մի՝ զի անարուեստ խաւսք, և բարբարիկոն լեզու, և երկրորդ՝ վասն թաւութեան զնոյնս կարգել ի գրին, որք ըստ խաւսիցն յարմարին»[24]:

Ինչպես նկատելի է, մաշտոցյան գրերի քանակային «շատության» դավիթյան բացատրության առաջին մասը համեմատաբար ավելի առաձգական է և տարտամ։ «Անարուեստ խօսք» ասելով կարելի է հասկանալ ռամկական խոսակցական լեզուն՝ ի տարբերություն նրա գրական մշակվածության ենթարկված «արուեստաւոր» լեզվի։ Բայց և «անարուեստ խօսք» ասելով կարելի է հասկանալ նաև «բարբառային խոսվածք» կամ պարզապես բարբառ։ Իսկ ինչ վերաբերում է «բարբարիկոն լեզու» արտահայտությանը, ապա դա չէր կարող իբրև «բարբառ» ըմբռնվել Դավթի կողմից, որովհետև «բարբարիկոն լեզու» բառակապակցության իմաստը չի առնչվում «բարբառ» հասկացությանը, այլ դա նշանակել է, դեռևս վաղնջական ժամանակներից, պարզապես «օտար՝ ոչ մայրենի լեզու», կամ, որ նույնն է՝ «այլալեզու խոսվածք»։ Ընդսմին այդ արտահայտությունը փոխառություն է հունարեն βαρβαρικόν բառի, որ նշանակել է «ոչ հունարեն՝ օտար լեզու»։ Հետևաբար՝ Դավթի մոտ օգտագործվածը պետք է ըմբռնել որպես հայերենի կողքին օտար փոքրամասնությունների կիրառած «ոչ հայերեն» լեզուները, որոնք շատ հավանաբար եղել են V դարի Հայաստանում։ Բայց ինչպես էլ ըմբռնելու լինենք «անարուեստ խօսք» և բարբարիկոն լեզու» արտահայտությունները, միևնույն է, դրանք չէին կարող նշանակություն ունենալ մաշտոցյան գրահամակարգի հիմքում ընկած ընդհանուր և միասնական արտասանական բազայի համար՝ եթե իրոք դրանք նույնիսկ բարբառային կամ այլալեզու հնչույթային հակայրությամբ տարբերակված լինեին մեսրոպյան հայերենից:

Ինչ վերաբերում է վարդանյան մեկնությանը՝ որոշակի բարբառների առկայությամբ տրված պատճառաբանությանը գրերի քանակային «շատության» մասին՝ դարձյալ ճիշտ չէ։ Իրականում՝ Մաշտոցը ոչ թե Հայաստանում առկա բոլոր բարբառների հնչույթային տարբերակումների ընդգրկումով համադրեց ու հորինեց իր գրահամակարգը, այլ միայն մեկ խոսակցական լեզվի արտասանական բազայի հնչույթային արժեքների բացահայտումով ստեղծեց հայերենի այբուբենը, ըստ որում հիմք ընդունելով այն ժամանակ վարչա-քաղաքական կենտրոն հանդիսացած և էթնիկական լեզվի հասարակական դերով օժտված Արարատյան դաշտավայրի խոսակցական լեզուն: Այնքանով, որքանով Վարդան Արևելցին ընդունում է V դարում հայ բարբառների առկայությունը Հայաստանում՝ ճիշտ է։ Դրա վավերականությունը հավաստում են դեռևս մեր դասական մատենագիրները՝ Կորյունը, Եզնիկը և Խորենացին, որոնց աշխատություններին Վարդան Արևելցին, բնականաբար, քաջատեղյակ

---

24 Ն. Ադոնց, նշված աշխատ., էջ 93։

էր։ Այսպես, Կորյունի մոտ կարդում ենք. «Յայնժամ վաղվաղակի հրաման առեալ ի թագաւորէն՝ սկիզբն առնելոյ զխուժադուժ կողմանսն Մարաց, որք ոչ միայն վասն դիւական սատանայակիր բարուցն ճիւաղութեան, այլև վասն խեցբեկագոյն և խոշորագոյն լեզուին՝ դժուարամատոյցք էին»[25]: Եզնիկը «այս» բառի բառիմաստային տարբերությունների է հավաստում հյուսիսային և հարավային Հայաստանի խոսվածքներում, ըստ որում ներկայացնելով այն շեշտված հակադրությամբ. «...Ասի և դև ոգի, այլ ոգի չար վասն անհնազանդութեանն և ապստամբութեանն. զոր թէպէտ և ի մեր լեզու՝ այս չար ասեմք, որպէս ի խորանաց հարցն մերոց առաջնոց ըստ սովորութեան ի մեզ կարգելոյ, այլ գիտեմք՝ եթէ այսն հողմ է, և հողմն՝ ոգի, ըստ յառաջագոյնն ասացելոց։ Քանզի յորժամ մեք ասեմք՝ թէ սիք շնչէ, ստորնեայք ասեն՝ այս շնչէ»[26]: Պատմահայր Խորենացին աներկմիտ պարզությամբ հաստատում է, որ դեռևս V դարում և նրանից առաջ Հայաստանում գործուն կիրառություն են ունեցել «հայկական խոսվածքներ ու լեզուներ». «Բայց հրաման տայ բնակչաց աշխարհին՝ ուսանել զխօսս և զլեզուս հայկական»[27], կամ՝ «խոստանայր հայկականացս լեզուաց առնել նշանագիր»[28]:

Դիոնիսիոս Թրակացու հայ թարգմանիչը հականե անվանե հիշատակում է Գորդայից բարբառը՝ հնչյունական-արտասանական բարբառային տարբերակը մատնանշելու առթիվ. «Մանէճ... և Գորդայիցն փնքեանց գաղափար յատկական, որպիսի Մանայն»[29]: Հայ թարգմանիչը մինչև անգամ բարբառային ձևաբանական տարբերություններ է առաջադրում, որոնք գոհարային արժեք ունեն հայոց լեզվի ու նրա բարբառային ճյուղավորումների պատմության ստուգապատում հետազոտման համար. «Եւ երրորդն՝ եչիւ և այբիւ դարձեալ, որգոն գեամ, գեաս, գեայ. և ըստ լեզուաց ո/յ/իւ, որգոն գոմ, և յղոմ»[30]:

Սակայն պետք է ասել, որ դասական մատենագրության ստեղծման շրջանում բարբառները դեռևս ձևաբանական ուժեղ հակադրություններով չէին բնորոշվում, ինչպես Վարդան Արևելցու ժամանակ։ Եթե Վարդան Արևելցու պնդումը ճիշտ լիներ գրերի գյուտի ժամանակի հարաբերությամբ, այսինքն՝ Մաշտոցը բարբառների հնչույթների համադրմամբ ստեղծած լիներ իր գրահամակարգը, որի պատճառով էլ այդքան «շատ» տառեր գործառության մեջ են հայոց այբուբենում, ապա այդ անխուսափելիորեն և անպայմանորեն կարտացոլվեր մեսրոպյան շրջանի մատենագրության մեջ նույնական բառարմատների ու բառաձևերի խայտաբղետ գրությամբ, որպիսի հանգամանքը, սակայն, բացառված է դասական շրջանի ամբողջ գրավոր արտադրանքում։ Եթե Վարդան Արևելցու կամ Դավթի պնդումները հավաստիության ուժ ունենային, ապա մաշտոցյան գրերից առնվազն մեկը պետք է սոսկ անվանական ու ձևական կերպով գոյություն ունենար՝ որպես տվյալ բարբառի կամ «այլալեզու» խոսվածքի արտասանական բազայի արտահայտիչը կամ ներկայացուցիչը։ Բայց դասական հայերենի մեր ամբողջ մատենագրությունը հերքում է նման վարկածը։ Բանն այն է, որ մեր մատենագրության մեջ կիրառություն գտած քե-

25 Կորիւն, Վարք Մաշտոցի, աշխատասիրությամբ Մ. Աբեղյանի, Երևան, 1941, էջ 54։

26 Եզնիկ Կողբացի, Եղծ Աղանդոց, Թիֆլիս, 1914, էջ 64—65։

27 Մովսես Խորենացի, Պատմութիւն Հայոց, աշխատասիրությամբ Մ. Աբեղյանի և Ս. Հարությունյանի, Տփղիս, 1913, էջ 46։

28 Նույն տեղում, էջ 325։

29 Ն. Ադոնց, Նշված աշխատ., էջ 14։

30 Նույն տեղում, էջ 26։

*բականական իմաստի և քերականական ձևի միասնությամբ կիրառված նույն բառույթը կամ բառաձևը մատենագրական բոլոր երկերում էլ, վերջին հաշվով,* գրապատկերային միևնույն կրկնություններով է արտացոլվել: *Իսկ այդ նշանակում է՝* գրերի գյուտի հիմքում ընկած է եղել մեկ ընդհանրական խոսակցական լեզվի արտասանական բազան՝ հնչույթային ճիշտ այնքան միավորներով, որքան միավորներ կազմում է մաշտոցյան գրահամակարգը: *Ասվածից հետևում է, որ Վարդան Արևելցու մեկնության միայն երկրորդ պատճառաբանությունն է ճիշտ մեսրոպյան ժամանակաշրջանի հայերենի համար։ Այլ կերպ ասած՝ ի տարբերություն ուրիշ ժողովուրդների գրահամակարգերի քանակային սակավության, հայերեն գրերի շատության «երկրորդ պատճառն՝ լեզուիս հարստութիւն»-ն է, այսինքն՝ արդի լեզվաբանության արտահայտությամբ՝* V դարի Արարատյան դաշտավայրի խոսակցական հայերենի արտասանական բազայի հարստությունն է պատճառը մեսրոպյան գրերի քանակային շատության, *որը և միակ ընդունելի գիտական տեսակետն է։*

*Այնուհետև Վարդան Արևելցին չափազանց ուշագրավ միտք է հայտնում այն մասին, որ հնչույթը իր բնույթով նման է բնության տարրերին, որոնք օժտված են ինչպես իրար* հակադրվելու, *այնպես և իրար* զուգորդելու *կամ* ներդաշնակելու *հատկությամբ։ Հնչույթների այս առանձնահատկությունների բացահայտումը գիտական կարևոր նշանակություն ունի, որը դրված է արդի կառուցվածքային հնչույթաբանական տեսության հիմքում։ Վարդան Արևելցու հարցադրումն ինքնին շատ հեռաթափանց է, բայց դրա կոնկրետ մեկնությունը հնչույթների նշումով, հասկանալի է, սահմանափակ։ Նա գրում է. «Որպէս տարերքդ, որ ունին* հակառակութիւն *և* հաշտութիւն, *որ է միաւորութիւն, և իւրեանց միաբանութեամբն ծնանին զամենայն, նոյնպէս և գիրն ի ձայնաւորաց և յանձայնից միացեալք գոյացուցանեն զբանն ի լերկից և ի թաւաց, ի բթից և յայլոցն»*[31]*։*

*Նկատենք, որ Վարդանից առաջ Անանուն քերականը թեև չի բացահայտում տարերքի հետ հնչույթի ունեցած ընդհանրության բնույթը, բայց և զուգահեռ անցկացնում է. ընդսմին՝ զուգահեռ անցկացնելիս ոչ թե հնչույթն է վերցնում իբրև համեմատության եզր, այլ՝ գիրը, որով և անհամեմատորեն գիջում է վարդանյան ըմբռնմանը։ Անանուն քերականը գրում է. «...Եւ ասեմք եթե տառ մակագրելով յայտ արար թէ, որպէս տարերք նիւթ են մարմնոյ, այսպէս գիր տարր է և նիւթ ամենայն խաւսից»*[32]*։ Ինչպես տեսնում ենք՝ Անանունը չի տարբերում «տառը» և «գիրը»։ Ավելին՝ նա «տառը» հասկանում է պարզապես իբրև «գիր»։ Մինչդեռ Վարդան Արևելցին հնչույթն է համեմատում (որ նրա մոտ նույնն է թե՝ «տառ»), և ոչ թե գիրը. սա սկզբունքային և էական նշանակություն ունեցող գիտական հարցադրում է։*

*Մյուս կողմից՝ Դավթի մոտ կա բնության տարրերի հետ ունեցած ընդհանրության բացահայտման միայն մի կողմը, այն է՝ «զուգորդումների» նմանությունը։ Դավիթը գրում է. «Եւ դի ասաց կրկնաբանելով զտառս, ցուցանէ զտարրումն և զմիաբանութիւն գրոց և ձայնի անգոյ տարերց հանգոյն ընդ երկրի և ընդ կենդանիս միայարութեան»*[33]*։ Նշենք սակայն, որ գիտական հնչույթաբանական տեսության համար առավել կարևոր է հնչույթների այն առանձ-*

[31] *Սույն աշխատությունը, էջ 85։*

[32] Ն. Ադոնց, *նշված աշխ., էջ 93—94։*

[33] *Նույն տեղում, էջ 94։*

նահատկության բացահայտումը, որ հայ քերականագիտության մեջ տվել է միայն Վարդան Արևելցին. այդ այն է, որ հնչույթները օժտված են միմյանց նկատմամբ հակադրականության կամ ներհակականության ներունակությամբ: Պետք է ասել՝ հենց սա՛ էլ հիմքն է հնչույթների առաջացման ու ինքնուրույնության: Այդ իսկ պատճառով վարդանյան բացահայտումը հնչույթների կարևորագույն հատկանիշի՝ միմյանց նկատմամբ ունեցած հակադրության, գիտական ակներև նշանակություն ունի հնչույթաբանական տեսության համար:

Այնուհետև. ելնելով գիտական այն ճիշտ հարցադրումից, որ հնչույթը այլ բան է քան գիրը, Վարդան Արևելցին քերականությունը նմանեցնում է, պատկերավոր ձևով, մարդուն (որպիսի համեմատությունը, անշուշտ, պայմանավորված է իր ժամանակի մտածողությամբ) և ասում՝ «տառը», իբրև հնչույթ, նման է մարդու հոգուն, իսկ գիրը, իբրև հնչույթի թանձրացական արտահայտչաձև, նման է մարդու մարմնին: Այդպես էլ գրում է նա. «Արդ՝ զի՞նչ նմանի քերականութիւնս.— մարդոյ. տառն ի հոգի և գիրն ի մարմին»[34]: Նշենք, սակայն, որ տառի (իբրև հնչույթ) և գրի վարդանյան այս ըմբռնումը զարգացումն ու տեսական ամբողջական ընդհանրացումն է դավթյան ըմբռնման. Դավիթը այս մասին գրում է. «Եւ զի ասէ յաղագս տառի և բուռն հարկանէ զգրոյ. քանզի տառդ անմարմին, իբր թէ բանի նշանակ, զի գիտելի կացուցանէ գրովն զբանն, որպէս այբին զայբն»[35]:

Ի դեպ, Վարդան Արևելցին երբ քննում է ձայնավորների և բաղաձայնների հարաբերական արժեքները նրանց բառակերտական նշանակության տեսակետից, գտնում է, որ ձայնավորները բառակերտումներում և առհասարակ լեզվի մեջ չափազանց կարևոր դեր են կատարում՝ ճիշտ այնպես, ինչպես յոթ զգայարանները մարդու բոլոր գործառնություններում. «Եւ այս եւթն ձայնաւոր գրերս յեթն զգայարանքս մարդոյս,— գրում է Վարդան Արևելցին,— որով յարդարի մարդութիւնս»[36]: Ընդսմին՝ անկախ նրանից, թե ձայնավորները առանձնաբար են հանդես գալիս, թե զուգորդաբար («լծակից»), նրանք օժտված են լինում ձայնային արժեքով և քերականագիտության համար ունեն այն նշանակությունը, ինչ ունեն մարդու համար նրա յոթ զգայարանները. «Այս եւթն գիրս՝ թէ ունին լծակից և թէ ոչ՝ ինքեանք զիւրեանց ձայնն կու բերեն. և որպէս եւթն զգայարանքն ազնեն հոգւոյն, նոյնպէս և այս եւթն գիրս՝ հեռական առնեն տուխս»[37]: Համեմատական ընդհանրությունների միջոցով բացահայտելով հայերենի ձայնավորների տարբեր կողմերը, Վարդան Արևելցին կատարում է ևս մի ընդհանրացում. ձայնավորները բոլորն էլ համապատիվ նշանակություն չունեն լեզվի համար՝ իրենց և՛ գործածության հաճախականությամբ, և՛ արտաբերական արժեքով. «Եւ ո՞ր են եւթն զգայարանքս,— աչքն, ականջն, քիթն, բերանն, շաւշափականն, հոգին և մարմինն: Եւ որպէս ի յանդամսն ոմն քան զոմն պատուականագոյնք են, նոյնպէս և ի գրերոյս՝ է՛, որ պատուականագոյն է մինն քան զմիւսն, և առաւել զարդարէ զբանն»[38]: Մինչդեռ Վարդանից առաջ Դավթի մոտ նախապատվության ըմբռնումը նախամեծարության իմաստով

[34] Նույն աշխատությունը, էջ 85:

[35] Ն. Ադոնց, նշված աշխատ., էջ 93:

[36] Նույն աշխատությունը, էջ 85:

[37] Նույն տեղում, էջ 87:

[38] Նույն տեղում, էջ 85:

արտահայտված է միայն ձայնավորների՝ բաղաձայնների նկատմամբ ունեցած հարաբերությամբ. «Եւ ապա որոշելով զձայնաւորսն ի բաղաձայնիցն, իբր պատուականս և պատճառս ձայնի յարմարման. զի և ըստ ինքեանց և ըստ զայլսն խառնելոյ բաւական[ան]ան հնչումն և կամ բան յաւգաւոր պատկանաւորել»[39]։ Նույն հարցադրումն ունի նաև Անանուն մեկնիչը[40]։

Միջնադարում քերականագիտությունը, իր հարցադրումների բնույթով ու ընդգրկմամբ՝ ամենալայն աղերսների մեջ լինելով վերնաշենքային երևույթների՝ աստվածաբանության, փիլիսոփայության, ճարտասանության, գրականության (ժողովրդական բանահյուսություն և արձակ ու չափածո երկերի տեսություն) հետ, ինքն էլ իր հերթին մասամբ վերնաշենքային բովանդակություն է ստացել: Այն չափով, որչափով միջնադարում լեզուն չի դիտվել բացառապես իբրև հաղորդակցման միջոց, և լեզվական միավորների ու իրակությունների փոխհարաբերությունները պարզաբանող գիտությունը՝ քերականությունը, որպես միայն արտահայտչական միջոցների համակարգային պայմանավորվածությունները բացահայտող գիտություն, բնականաբար, քերականագիտությունը մեծ չափով տուրք էր տալու (և իրո՛ք տվել է) աշխարհայացքային մեկնություններին այնպիսի երևույթների, որոնք, լինելով զուտ լեզվական իրակություններ, կարող էին գիտականորեն ճիշտ բացատրվել լեզվի կառուցվածքային և բնապատմական օրինաչափությունների բացահայտման վրա հենվելով միայն:

Դիցուք՝ հնչյունաբանության բաժնում երկար ձայնավոր դիտված է և աւ հնչույթների բնույթի «բացատրությունը» տրվում է աստվածաբանության տեսանկյունից. նրանց երկար լինելը, որպես հայեցողաբար դիտված առավելություն, վերագրվում է գերբնականին, այն է՝ աստծուն և նրա հատկանիշին՝ աշխատանքների արդյունքները մարմնավորող ենթադրյալ «գործերին»։ Աշխարհայացքային այդ «հիմնավորումը» տալիս, Վարդան Արևելցին ելնելով ժամանակի այն պատկերացումից, որ «աստված» է միայն օժտված գոյատևման հարաձիգության՝ հավերժության հատկանիշով, ուստի և է ձայնավորի ամանակային երկարությամբ ներունակ լինելը հիպերբոլիկ համեմատությամբ մեկնաբանում է աստծո գոյաձևի ժամանակային անսահմանափակությամբ։ «Այս երկու գիրս աստուածայինք են, զի էն է աւրինակ, որ միշտ է աստուած»[41]։ Եվ որովհետև «աւ» երկար հնչույթը ավելի հաճախ հանդիպում է գասական հայերենի բայաձևերում (ինչպես՝ աւրհնել, աւգնել, աւժանդակել ևն), այդ պատճառով էլ աւ-ը նույնպես համարում է «աստվածային ձայնավոր»՝ ճիշտ այն տրամաբանությամբ, որ, իբր, գործողության հարատևման ամենալայն ընդգրկումն ունեն աստծո «գործերը», որոնք կոչված են մարդկանց «զարմացնելու» և «հիացնելու». «Եւ աւ-ն՝ գործոցն աստուծոյ ի զարմացումն և ի տեսութիւն»[42],—գրում է Վարդան Արևելցին։

Աշխարհայացքային նույն դիտակետից ելնելով «սուղ» համարված ո, ե, ւ ձայնավորները, ի տարբերություն «աստվածային» ձայնավորների, բնութագրվում են իբրև «մարդկային» հնչույթներ, քանի որ, ըստ այդ տրամաբանության, մարդու կյանքը նույնպես կարճատև է. «Իսկ այս երեքս (իմա՝ ո, ե, ւ

39 Ն. Ադոնց, նշված աշխատ., էջ 94։

40 Տե՛ս նույն տեղում, էջ 131։

41 Նույն աշխատությունը, էջ 86։

42 Նույն տեղում։

հնչույթները—Լ. Խ.) սուղ վասն այն ասին, զի մարդկայինք են»[43]: Միանգամայն իրավացի է հնդեվրոպաբանական լեզվաբանության կարկառուն տեսաբան Անտուան Մեյեն, երբ գրում է. «Յուրաքանչյուր դարաշրջան ունի յուր փիլիսոփայությանը համապատասխանող քերականություններ»[44]: Այս ընդհանրացումը լիովին վերաբերում է նաև հայ իրականության տվյալ ժամանակաշրջանի քերականագիտությանը:

Ի դեպ՝ Վարդան Արևելցին առաջին քերականն է, որ խոսում է օ հնչույթի գրավոր երկակի դրսևորումների մասին, մեկը՝ իբրև ո, մյուսը՝ իբրև աւ. ընդսմին մատնացույց է անում նաև նրանց տարբերակային առանձնահատկությունը՝ դրանք բնորոշելով ըստ արտասանական տեղի. եթե աւ-ը կազմավորվում է բերանում, ասում է նա, ապա ո-ն՝ քթում. «Երկոքին [են] ոյերն. մին՝ ոյ է, և միւսն՝ աւ, զի աւ-ն բերանի բառ է, և ոյն՝ քթի. և այս ինքն է, զի յորժամ ասես թէ վոյ՝ նա քմաւք ասի: Եւ վասն այսորիկ են սուղք և մարդկայինք»[45]: Վարդան Արևելցու այս վկայությունը կարևոր է նրանով, որ ուղղակի ակնարկում է արդեն XIII դարում ո-ի և աւ-ի հնչույթային տարբերակումը արտասանական բազայում: Բացի դրանից, ուշագրավ է և այն, որ այստեղ, ինչպես և այլուր, Վարդան Արևելցին հնչույթաբանական վերլուծություն կատարելիս, ի տարբերություն իր նախորդների, հայերենի հնչույթները քննում և որոշում է գերազանցապես ըստ նրանց արտասանական տեղի: Ավելին. բաղաձայնների մասին խոսելիս, նրանց տեսական ընդհանրացումը տալիս է՝ ելնելով նրանց արտաբերման տեղի և բնախոսական (ֆիզիոլոգիական) առանձնահատկություններից: Դիցուք՝ «Նուրբն բարակն է և նաւսրն, որ մերկ և ցոփ ձայն հանէ և շտանչէ կարի զբերանն ի ձայնելն»[46]: Կամ՝ «Ստուարն հաստն է և թանձրն, որ ի գանչելն զբերանոյն մասունսն աւելի յիրեար բերէ և դժուարաւ հանէ զձայնն»[47]: Ի լրումն բերված փաստերի՝ առավել բնորոշ է Վարդան Արևելցու հնչյունաբանական դիտողություններում հետևյալ քաղվածքը՝ արտաբերական տեղի հաշվառմանը պատշաճ ուշադրություն դարձնելու անհրաժեշտությունը ընդգծելու առումով. ք-ի և գ-ի հնչույթային տարբերությունը բացատրելիս, Վարդան Արևելցին ասում է. «Այս երկու պատճառաւ է դրած. մի՝ որ զլծորդսն ցուցանէ, և երկրորդ՝ որ զհաստն և զնաւսրն բաժանէ: Վասն զի այն, որ լեզուին ծայրիւն գայ ի յասելն և շրթանցն ծայրիւն՝ նա այն նաւսր է: Եւ որ լեզուին միջաւքն ասի կամ լնդաւքն՝ այն հաստ և թանձր, որպէս թօն և կամ քէն: Իսկ որ լեզուին տակաւքն ասի՝ այն միջակ է, որպէս գիմն և կամ կենն և այլ այսպիսիք»[48]:

Հարկ է նշել, որ Վարդան Արևելցին լեզվաբանի հմտությամբ հնչյունաբանական վերլուծության է ենթարկում «չարաձայն» դիտված բաղաձայնները. «Նոյն և այս ինն գիրս չարաձայնք են,— գրում է նա,— այսինքն՝ անձայնք ասին. և տե՛ս, զի չունին ձայն ի սկիզբն, որպէս թէ կամիս ասել բեն, նա առժամայն շրթունքդ յիրեար խփին և ձայնն կորնչի, նոյնպէս և այլքն ի յընկիցս: Եւ թէպէտ որ ելանէ սակաւ մի ձայն՝ նա լինի թնդիւն և վատ ձայն»[49]: Զգաց-

[43] Նույն աշխատությունը, էջ 86:

[44] A. Meillet, Linguistique historique et linguistique générale, Paris, 1948, p. VIII:

[45] Նույն աշխատությունը, էջ 86:

[46] Նույն տեղում, էջ 88:

[47] Նույն տեղում, էջ 89:

[48] Նույն տեղում, էջ 90:

[49] Նույն տեղում, էջ 91:

վում է հեղինակի փորձառական ջանքերի գործադրումը հնչյունաբանական ճիշտ եզրահանգումներ ձեռք բերելու նպատակով։ Իրոք, այս հանգամանքը խոսում է հեղինակի որոնող և հետազոտող մտքի անվիճելիության մասին. ա՛յն մասին, որ նա մեխանիկաբար չի յուրացնում և չի կրկնում մինչ այդ իրենից առաջ արված հնչյունաբանական այս կամ այն բնութագրումները, այլ անձամբ ստուգում և հնչյունաբանական վերլուծության է ենթարկում հայերենի հնչույթային արժեքները. և որ կարևորն է՝ առաջադրում է հնչյունաբանական վերլուծության փորձառական մեթոդը, որի զարգացման ու կատարելագործման ուղղությամբ ընթանալու էր, անշուշտ, գիտական հնչյունաբանության տեսությունը, որին և ականատես ենք մենք ներկայումս։

Նկատենք, սակայն, որ Վարդան Արևելցու համար հնչույթների էության բացահայտումը նրանց արտաբերական տեղով որոշելը ոչ թե պատահական՝ անցողիկ նշանակություն է ունեցել, այլ՝ ելակետային հաստատ համոզմունք և հայեցակետ։ Դրա վառ ապացույցն է և այն, որ նման մոտեցումը Վարդան Արևելցին միակ գիտականն է համարում («ստ է ամէն արուեստն»)։ Այսպես, ձ-ի հնչույթային ճիշտ արտաբերումը որոշելու համար ս-ի, զ-ի և ց-ի հարաբերությամբ, ուսումնականներին խորհուրդ է տալիս Վարդան Արևելցին, որ իրենց կողմնորոշման համար ելնեն այդ հնչույթների արտաբերական տեղից. «Արա՛ բնտրութիւն, ո՛վ ուսումնասէր,—ասում է նա,—և բաժանեա՛ լեզուաւդ և բերանովդ, թէ ո՞ր են, որ լեզուին ծայրն առնու, և կամ զո՞ր՝ մէջն, կամ՝ ո՞ր են, որ տակաւ լեզուին ասին կամ շրթամբքն և կամ լնդաւքն։ Այլ և բնտրեա՛ ի մէջ թաւացն և լերկիցն և միջակացն, զի ա՛ստ է ամէն արուեստն»[50]։

Վարդան Արևելցու հնչյունաբանական վերլուծությունը հատուկ է նաև առարկայական մտածողությամբ պայմանավորված արտալեզվական երևույթների միջոցով հնչյունաբանական այս կամ այն իրողությունների հիմնավորումը։ Եթե մեթոդաբանական այս մոտեցումը առանձնապես Վարդան Արևելցու մոտ առաջատար է, ապա միջնադարյան մեր բոլոր քերականների մոտ ընդհանուր օրինաչափություն է կազմում՝ չնայած այն բանին, որ մեկի մոտ ընդգծված, մյուսի մոտ՝ թույլ արտահայտված լինի։ Այսպես, բաղաձայնների բնույթը նկարագրելիս, Վարդան Արևելցին սկզբում ասում է, որ բաղաձայնները առհասարակ զուրկ են ձայնից և մինչև անգամ իրենք իրենց արտաբերվել չեն կարող. իսկ ձայն արտաբերելու ի վիճակի կլինեն նրանք միայն ձայնավորների զուգորդմամբ. «Բաղն մի ասի, զի յորժամ ընդ ձայնաւոր գիրսն միանան և խառնին՝ ձայն հանեն. իսկ առանց ձայնաւորաց և ո՛չ զինքեանս կարեն անձնացուցանել»[51]։ Այստեղից մի այլ ընդհանրացում անելու համար, իբրև հիմնավորում, Վարդան Արևելցին դիմում է արտալեզվական՝ բայց առարկայական երևույթների հետ համեմատության մեթոդին. նա գտնում է, որ առհասարակ ոչ մի բարիմաստ հայերենում հնարավոր չէ արտահայտել բաղաձայնով ճիշտ այնպես, ինչպես բնության մեջ ծնունդը չի կատարվում միայն արուի ներգործությամբ. «Եւ որպէս յարուէ միայն՝ առանց իգի ծնանել անհնար է, նոյնպէս և սոքա (*իմա՝* բաղաձայնք—Լ. Խ.) առանց ձայնաւորացն ոչ կարեն ծնանել բանս անձնաւորս»[52]։ Իսկ «բաղաձայն» տերմինը բարդ կազ-

---

50 Սույն աշխատությունը, էջ 90—91։

51 Նույն տեղում, էջ 88։

52 Նույն տեղում։

*մուԹյուն ունի և համապատասխանում է այն բացատրուԹյանը, որ տալիս է Վարդան Արևելցին. «բաղ» նշանակում է «կից», «հարող», հետևաբար բաղաձայն՝ «ձայնին հարած» հնչույթ է նշանակում, որի համար ստեղծվել է մի հոմանիշ տերմին ևս իմաստային նույն արժեքով՝ «շարաձայն»։ Վերջինիս բացատրուԹյունը նույնպես տրվում է արտալեզվային երևույԹների հետ համեմատուԹյան միջոցով.* «Որպէս երկիր, որ առանց խոնաւութեան և ջերմութեան՝ իւր ցրտութեամբն ամուլ է, այլ առեալ ցրտութեամբն իւր և չորութեամբն զգիջութիւնն և զջերմութիւնն պտղածին լինի և ծաղկաբուղխ, նոյնպէս և սոքա *(իմա՝ բաղաձայնք կամ շարաձայնք*—Լ. Խ.) իւրեանց խառնմամբն»[53]:

*Վարդան Արևելցին, որպեսզի փաստարկի հնչյունաբանական այն ճիշտ դիտումը հայերենի համար, որ* կ-*ի*, ք-*ի և* խ-*ի հերԹագայուԹյունները տարբեր բառերում դրսևորվում են ոչ Թե պատահականորեն, այլ ըստ անհրաժեշտուԹյան («ըստ կարիսս»), գտնում է, որ եԹե օրինաչափական այդ հերԹագայուԹյունները անտեսենք, ապա վարված կլինենք հար և նման լուծը տեղափոխել չկարողացող այն եզների, որոնց լծընկերները անհամապատասխան են կամ պատահական.* «Որպէս զլուծս եզանց ի չժուժելն փոխել, նոյնպէս *և* զայս *գրերս, զոր առ կարիսն փոխաբերեն՝ ոչ ձեռնարկելով ի յաւտարսն, այլ հարկաւ ի սոցանէ փոխաբերեն և լնուն զկարիսն*»[54]*։ Ինչ խոսք, որ համեմատուԹյունը նպատակասլաց է և համոզիչ։ Ծվ կամ՝ Նայերի բնույԹը բացատրելիս, Վարդան Արևելցին դիպուկ համեմատուԹյամբ բացահայտում է դրանց էուԹյունը մոմի երկակի հատկանշի հարանմանուԹյամբ, այն է՝ մոմը ջերմուԹյունից կակղում է, իսկ ցրտուԹյունից՝ պնդանում. «Եւ նայք վասն այնորիկ ասին, զի միջակք են և դիւրալուրք,* որպէս զմոմոյ բնութիւն, զի կարեն ի ջերմութենէն կակղանալ և ի ցրտոյն պնդանալ. նոյնպէս և ի սոցանէ լինին փոխադրութիւնք բառից»[55]:

*Այսպես, ուրեմն, արտալեզվական համեմատուԹյուններում բնորոշն այն է, որ դրանք բնագիտական ու կենցաղային խիստ կոնկրետացում ունեն. Վարդան Արևելցու քերականական մեկնուԹյան այս հատկանշական կողմը, բնականաբար, պայմանավորված է ժամանակի քերականագիտուԹյան մակարդակով։ Նշված հանգամանքը, սակայն, միջնադարյան բոլոր քերականական մեկնուԹյունների կարևոր առանձնահատկուԹյունը լինելով հանդերձ, միաժամանակ դրանց վերագրում է փոքր-ինչ* ճանաչողական բնույթ, *որոնց ուսումնասիրումը առանձին կարևորուԹյուն ունի ո՛չ միայն հայ քերականագիտական մտքի պատմուԹյան համար, այլև ժամանակի գիտական մտածողուԹյանը հետաքրքրած բազմաԹիվ հարցադրումների քննուԹյան առումով, այդ իսկ պատճառով միջնադարյան քերականական մեկնուԹյունների ճանաչողական նշանակուԹյունը անուրանալիորեն համապարփակ է։*

*Այնուհետև. Վարդան Արևելցին, Թրակացու աշխատուԹյան հայերեն Թարգմանության համաձայն, հնչյունաբանուԹյան բաժնում է քննում նաև այն հարցը, Թե դասական հայերենում ինչպիսի վերջավորուԹյուններ ունեն բառերը։ Նա միանգամայն ճիշտ հավաստում է, որ գրաբարում բառերը մեսրոպյան այբուբենի բոլոր գրերով վերջավորվում են, բացի* ա-*ից*, Ե-*ից*, Ը-*ից և* Ո-*ից. «Այլ զու տե՛ս այբբենաւքդ,— գրում է նա,— զի* ամէն գրեղ բանի վերջ

---

[53] *Նույն աշխատուԹյունը, էջ 88։*

[54] *Նույն տեղում, էջ 90։*

[55] *Նույն տեղում, էջ 93։*

գան և լինին զատ ի չորիցդ (իմա՝ յայրէ և՛յեչէ, և յեթէ և յոէ — Լ. Խ.)»[56]: Այս առթիվ, համեմատության կարգով Վարդան Արևելցին քննում է նաև այն հարցը, թե որքան կարևոր է իմանալ հունարենի և լատիներենի («ի խաւսն Ֆռանգաց») համար բառ-անվանումների սեռային վերջավորությունները, որոնցով և որոշվում են նրանց սեռը՝ արական, իգական կամ չեզոք լինելը. «Բայց դու ազգ խոյզ արա և քննէ ի խաւսն, որպէս յոյնք և Ֆռանգք և Հելլենացիք, որ են Մակեդոնացիք, զի մեծապէս աշխատին մինչ որ հասանեն իւրեանց ջանիցն և կարեն ընտրութեամբ խաւսել և լսել զբառսն, թէ ո՛ր է՝ առո՞ւ է, թէ՞ էգ, և կամ թէ չէզո՞ք է, թէ՞ երկուորական»[57]: Վարդան Արևելցու այս հավաստումը նշանակալի է երկակի առումներով. Նախ՝ ճննական մոտեցում է պահանջում նա ուսումնականից լեզվական փաստերի նկատմամբ, որ մեթոդական չափազանց կարևոր պահանջ է լեզվական իրողությունների անաչառ դիտումից գիտական ճիշտ հետևություններ բխեցնելու կարողություն արմատավորելու իմաստով: Երկրորդ՝ ինչպես կարելի է վստահորեն մակաբերել քաղվածքից, Վարդան Արևելցին գիտե և՛ հունարեն, և՛ լատիներեն լեզուները իրենց կարևոր առանձնահատկություններով[58]: Ընդսմին հայերենի նկատմամբ ունեցած նրանց տարբերիչ հատկանիշները հակադրելիս նա իրոք լեզվաբանի մոտեցում է դրսևորում:

Նշենք, սակայն, որ այս հարցադրման կապակցությամբ հեղինակը կատարում է լեզվաբանական մի ուշագրավ ընդհանրացում ևս. Նա առանձին լեզուներում բառ-անվանումների սեռային հատկանիշին ոչ մի առավելություն չի վերագրում. եթե կուզեք՝ ընդհակառակն, սեռային հատկանիշով օժտված լինելը լեզվի արտահայտչական միջոցների և գրերի աղքատությամբ է բացատրում. այդ պատճառով էլ եթե հայերենի բառանվանումները չունեն սեռային վերջավորություններ, ապա դա միայն վկայում է հայերենի արտահայտչական միջոցների «հարստության» և «փարթամության» մասին, ուստի և հայերենը կարիք չի զգում սեռային ցուցիչների: Մինչդեռ այն լեզուներն են հարկադրաբար դիմել սեռային ցուցիչների, որոնք արտահայտչական միջոցների (քերականական իմաստների դրսևորման համար) պակասություն ունեն, ինչպես և գրերի սակավություն. «Բայց ազգս հայոց յաղագս հարստութեան և փարթամութեան լեզուիս և գրիս ո՛չ հարկեցան ի յայս,— գրում է նա,—այլ յոյնք և այլազգք հարկաւորեցան վասն լեզուացն և գրոյն սակաւութեանն. և այնու լցին զպակասութիւնն»[59]: Այստեղից այն կարևոր հետևությունն է բխում հայ լեզվաբանական և քերականագիտական մտքի պատմության (այլև ընդհանուր լեզվաբանական և քերականագիտական մտքի պատմության) համար, որ, ըստ Վարդան Արևելցու, քերականական միջոցների ղանազանությունը տարբեր լեզուներում պայմանավորված է այդ լեզուների կառուցվածքային յուրահատկություններով, և, որ չափազանց արժեքավոր է, լեզվի «հարստությունը» կամ «փարթամությունը» բնավ էլ պայմանավորված չէ քերականական միջոցների առատությամբ կամ սակավությամբ: Նման գիտական հարցադրումը և՛ լեզվաբանական, և՛ քերականագիտական տեսության մեջ խիստ ուշագրավ ներդրում է Վարդան Արևելցու կողմից, որպիսի ընդհանրացումը

[56] Սույն աշխատությունը, էջ 93:

[57] Նույն տեղում:

[58] Այս մասին առավել հանգամանորեն խոսք կլինի քիչ հետո:

[59] Սույն աշխատությունը, էջ 93:

ելակետային նշանակություն ունի ժամանակակից ընդհանուր լեզվաբանության և քերականագիտության համար։ Ընդսմին, արձանագրենք նաև, որ տեսական այս դրույթը ընդհանուր ճանաչում գտավ միայն XIX դարից սկսած։

Հնչյունաբանության մնացած հարցերում Վարդան Արևելցու մեկնաբանությունները առանձին նորույթ չեն բերում իր նախորդների դրույթների, փաստական նյութի դասակարգումների ու բնութագրումների համեմատությամբ, ուստի և դրանց վրա կանգ չենք առնում։

**3. Ձևաբանության և բառագիտության ըմբռնումների արծարծումներ։**— Ոչ միայն Վարդան Արևելցու երկի, այլև միջնադարյան բոլոր քերական մեկնիչների աշխատությունների համար բնորոշ է, որ բառագիտական հիմնական հարցերը արծարծվում ու քննվում են ձևաբանության բաժնում[60], ըստ որում բառակազմական տարբեր միջոցներով բառակերտումների տեսակային խմբավորումները, որոնցով լեզուն աշխարհաճանաչման և հավաստման ֆունկցիան իրագործում է առավել կատարելությամբ ու բարձր մակարդակի վերացարկումներով, մեկնաբանվում են գերազանցապես իբրև քերականական իմաստներ։

Վարդան Արևելցին «բառ»-ի իր սահմանմամբ, հիմնականում, համերաշխվում է Դավթի[61] հետ, բայց բառի բնութագրման մանրամասներում՝ ընդլայնում ու զարգացնում է դրա ըմբռնումը։ Խոսողության գործընթացում (պրոցեսում) գլխավոր միավորը Վարդան Արևելցին, Դավթի հետևողությամբ, համարում է բառը. նախադասության («բանի») ելակետն ու հիմքը դիտում է բառը՝ ճիշտ այնպես, ինչպես նավի համար ողնափայտն է որպես զոդող միավորիչը նրա բոլոր մասերի, ինչպես և տան համար՝ նրա հիմքը, որի վրա է խարսխված ամբողջ շինությունը. «Բառն «ասումն» թարգմանի և գոյանայ յերկուց վանգից,— գրում է Վարդան Արևելցին։— Եւ սա՛ է սկիզբն և հիմն բանի՝ որպէս ողնափայտ նաւի և հիմն տան»[62]։ Իսկ նախադասության հարաբերությամբ բառը, բնականաբար, փոքր է և՛ հնչյունական կողմով, և՛ իմաստային ծավալով. «զի յորժամ զբառն ընդ բանն կշռես, նա փոքր է բառն քան զբանն»[63]։ Բայց ուշագրավն այն է, որ բառը թեև դիտվում է իբրև լեզվի նվազագույն միավոր, սակայն այնպիսի՛ նվազագույն միավոր, որ արտասանական կողմով, թեև կարող է շատ ակնթարթային լինել, իսկ արտահայտած իմաստային բովանդակությամբ՝ շատ մեծ. այս երկու առանձնահատկությունների շնորհիվ միայն բառը բառ է՝ լեզվի նվազագույն միավոր. «Եւ այլ ևս փոքր վասն այնր ասաց բառին, զի ինքն փոքր է, և եզերութիւն (իմա՝ իմաստային ոլորտը— Լ. Խ.) մեծ ունի»[64]։ Այստեղից Վարդան Արևելցին կատարում է կարևոր ընդհանրացում. ըստ նրա՝ բառի էությունը բնորոշող այս երկու առանձնահատկությունների շնորհիվ հնարավոր է դառնում նաև աշխարհի ճանաչողությունը՝ երևույթների ըմբռնումը. «վասն զի ամենայն տարբերութիւնք ի նմանէն ելանեն»[65]։

---

[60] Այս առանձնահատկությունը ճիշտ կերպով դիտել է պրոֆ. Գ. Ջահուկյանը, տե՛ս նրա «Քերականական և ուղղագրական աշխատությունները միջնադարյան Հայաստանում» երկը, Երևան, 1954, էջ 87։

[61] Տե՛ս Ն. Ադոնց, նշված աշխատ., էջ 101։

[62] Նույն աշխատությունը, էջ 100։

[63] Նույն տեղում։

[64] Նույն տեղում։

[65] Նույն տեղում։

Վարդան Արևելցու միանգամայն ճիշտ պատկերացմամբ՝ լեզուն «կառուցվածքային» բնույթ ունի. այն նման է շինության, որի գագաթը հասնելու համար աստիճաններով կարելի է բարձրանալ. այս առթիվ նա հոյակապ և սպառիչ բնութագիր է տալիս բառին՝ այն համարելով «ամեն մի խոսքի մայրը», ակունքը («մայր ամենայն բանի»)։ Ընդսմին հարկ է նշել, որ բառի նման բնութագրում չենք գտնում Վարդան Արևելցու նախորդներից և ոչ մեկի մոտ. «Ի վեր ել արուեստաւորս,— գրում է նա,— իբրև ընդ աստիճանս ի կատար շինուածոյս, զի սաէ վասն բառից, որ է մայր ամենայն բանի»[66]։ Իր միտքը ամբողջացնելով լեզվի կառուցվածքային բնույթի մասին, Վարդան Արևելցին բառին վերագրում է այնպիսի իրական հատկանիշ, որով զուգորդվելով այլ բառերի հետ՝ «հյուսում է» խոսքը. ուրեմն՝ խոսքը կամ լեզուն «հյուսվածքային»—կառուցվածքային է։ Այս ճիշտ դիտումը նույնպես տեսական կարևոր նշանակություն ունի հայ լեզվաբանական և քերականագիտական մտքի պատմության համար. «Եւ «հետևակ բառ» ասաց,— գրում է նա,— որ զհետ ել և հետ իրերաց երթայ՝ հիւսելով բանն»[67]։ Միայն այս ձևով՝ բառերի զուգորդմամբ հառնում է լեզուն իբրև «մարմին» իր բոլոր բաղադրիչ մասերով («անդամաւք») և, որ կարևորն է՝ լեզուն իր ռեալականությունը դրսևորում է ճիշտ այնպես, ինչպես ամբողջի և մասերի փոխհարաբերությունը կարելի է նկատել բնության բոլոր երևույթներում։ Ընդսմին, Վարդան Արևելցու միանգամայն գիտական հարցադրման համաձայն, մտածողության դրսևորման՝ իմաստների արտահայտման այլ ձև չկա, քան բառերով զուգորդվող խոսքի հյուսվածքային հաղորդակցությունը։ «Եւ շինի մարմին և անդամք որպէս զբնութիւն, այլև զներfսակայ իմաստքն կատարեն յայտնելով»[68]։ Նշենք, սակայն, լեզվի «հյուսվածքայնության»—կառուցվածքայնության հիացք առթող այս մեկնաբանությունը կատարված է մատերիալիստական տեսանկյունով. մի հանգամանք, որ քրիստոնեական սխոլաստիցիզմի ու միստիցիզմի տիրապետության շրջանում պատիվ է բերում Վարդան Արևելցուն որպես գիտնականի և մտածողի՝ իր առարկայական հստակատեսությամբ ու փորձառական խորաթափանցությամբ, լեզվի բնույթի կառուցվածքայնության իր ըմբռնմամբ։

«Խոսքի» և նրա «մասերի» ուսմունքը հիմնավորելիս, Վարդան Արևելցին հենվում է դարձյալ Դավթի[69] վրա, բայց ավելի հստակ և պարզեցված ձևով ներկայացնելով տվյալ խնդրին առնչվող հարցադրումների ամբողջությունը։ Իբրև բնորոշ իրողություն ասենք, որ լեզվի տեսության վերաբերող կարևորագույն խնդիրների արծարծումը իր ապացուցումներով սերտորեն աղերսվում է փիլիսոփայության դրույթների հետ, որոնք հիմնարար ու ելակետային նշանակություն են ունեցել լեզվաբանության ու քերականագիտության զարգացման համար նաև հայ դպրության մեջ։ Ընդսմին նշենք նաև, որ հայ քերական մեկնիչները իմաստասիրական երկերի տեսական դրույթներին են դիմել ոչ թե ուղղակիորեն Դիոնիսիոս Թրակացու երկի պահանջով, այլ սեփական հայեցողության մղումով։ Այդ անհրաժեշտության ըմբռնումն ու հաջող կենսագործումը, անտարակույս, բարձրացրել են մեր միջնադարի քերականական մեկնությունների տեսական ընդհանրացնող բնույթն ու ընդգրկումը։

66 Սույն աշխատությունը, էջ 101։

67 Նույն տեղում։

68 Նույն տեղում։

69 Տե՛ս Ն. Ադոնց, նշված աշխատ., էջ 102—103։

Այսպես, որպեսզի «մասունք» քերականական տերմինի բնույթը գիտականորեն փաստարկվի, անհրաժեշտ է ճիշտ պատկերացում ունենալ այն փոխհարաբերությունների ամբողջության մասին,— պնդում է Վարդան Արևելցին, — որ առկա են «սեռ», «տեսակ» և «մաս» տերմին հասկացությունների միջև, որոնք, ըստ էության, փիլիսոփայական-տրամաբանական կարգեր են համարվում։ Բնականաբար՝ փիլիսոփայության հիմնարար դրույթների միջոցով, իբրև ընդհանրացնող տեսական նախադրյալներ, առավել հստակությամբ են ուրվագծվում լեզվական բարդ երևույթների ինչպես ներքին բովանդակությունը, այնպես և նրանց փոխհարաբերությունները։ Իրոք, ինչո՞ւ «մասունք» տերմինը պետք է տալ խոսքի բաղկացուցիչ կարգերին, և ոչ, դիցուք՝ «տեսակ» կամ «սեռ» տերմինները։— «Սեռ» չեն կարող կոչվել նրանք,— շարունակում է Վարդան Արևելցին,— որովհետև նրանցից չեն կարող առաջանալ «ինքնանման» ստորադաս բառախմբեր. այդպիսին լեզվաբանության-քերականագիտության մեջ դիտվում է միայն խոսքը («բան»), քանի որ նա՛ է միայն գերադաս կարգը (կատեգորիան), որին ստորադասվում են «ինքնանման» կարգերը, այն է՝ խոսքի մասերը. «Զի բանն որպէս սեռ է, որ կարէ բազում մասունս ծնանիլ ինքնանման...»[70],— ճիշտ կերպով նկատում է Վարդան Արևելցին։

«Տեսակ» տերմինը նույնպես չի կարելի վերագրել խոսքից՝ իբրև սեռից առաջացած «ինքնանման» կարգերին,—հավաստում է մեր հեղինակը,— որովհետև «տեսակ» կազմող կարգերը միմյանց նկատմամբ օժտված են ավագի և կրտսերի, առաջնայնության կամ երկրորդայնության, այլ կերպ ասած՝ նախամեծարության հարաբերականությամբ։ Այդ իսկ պատճառով «տեսակ» տերմինը ճիշտ չէր լինի հատկացնել խոսքի բաղկացուցիչ կարգերին, քանի որ վերջիններս հավասարարժեք են իրար նկատմամբ՝ ընդհանրապես խոսքի կառուցման համար նրանց ունեցած նույնական անհրաժեշտության տեսակետից։ Այդ առանձնահատկության հաշվառումից ելնելով էլ նպատակահարմար է «մասունք» տերմինի գործածությունը խոսքի բաղկացուցիչ կարգերի անվանման համար, քանի որ յուրաքանչյուր մաս նրա մյուս մասերի նկատմամբ միայն հավասարարժեք գոյըմբռնում է դրսևորում խոսքի կառուցման անհրաժեշտության առումով. «Մասունք» ասաց իմաստասէրս, և ոչ «տեսակք»,— գրում է Վարդան Արևելցին,— զի աստ «մասունք» պատուականագոյն են քան «զտեսակսն», վասն զի «տեսակքն» աւագ և կրտսեր ճարկաւորին գոլ, բայց «մասունքն»՝ ո՛չ»[71]:

Ինչ վերաբերում է խոսքի մասերի քանակի որոշմանը, ապա այդ հարցում առկա է տարակարծություն քերականների («քերդողաց») և իմաստասերների միջև,— նշում է Վարդան Արևելցին։ Քերականների մեծամասնությունը ընդունում է ութ առանձին խոսքի մասեր, իսկ առանձին քերականներ՝ ինը, մյուսների ընդունածի վրա ավելացնելով նաև «հասարակ գոյական» անունը («առասութիւն»-ը)։ Բայց Վարդան Արևելցին, Թրակացու տեսակետը պաշտպանելով, իննականներին մերժում է այն ճիշտ պատճառաբանությամբ, որ «առասութիւն»-ը արդեն ընդգրկված է անվան քերականական հասկացության մեջ, հետևաբար՝ «անունն մասն է, իսկ առասութիւնն՝ մասին մասն

70 Սույն աշխատությունը, էջ 101։

71 Նույն տեղում։

է...»[72]: Ի տարբերություն քերականների, բոլոր իմաստասերները, մասնավորապես Արիստոտելը և Պորփյուրը խոսքի մասեր են ընդունում միայն հինգը. «... համարէն իմաստասէրքն և Արիստոտէլ և Պորփիւր հինգ են ասացեալ, որպէս ի Բնագիրքն գտանելոց ես։ Եւ համարէն քերթաւղքն՝ ութ»[73]։ Քերականների և փիլիսոփաների այս տարակարծության մեջ, սակայն, Վարդան Արևելցին (ինչպես և Դավիթը) սկզբունքային հակադրություն չի տեսնում, այլ, ընդհակառակն, ճգնում է ամեն կերպ կոծկել տարակարծության սկզբունքային հակադրությունը (անշուշտ առանց խորամուխ լինելու հակադիր դիրքավորումների էության մեջ)։ Նա (ինչպես և Դավիթը) դիտել է տալիս, որ եթե փիլիսոփաները խոսքի ութ մասերից հանում են «ընդունելություն»-ը (իմա՝ դերբայը), «դերանունը» և «հոդը» (իմա՝ ἄρθρον), ապա այդ այն պատճառով, որ նշված խոսքի մասերն արդեն ստորադասվում և ենթարկվում են կա՛մ անվանը, կա՛մ բային. «Իսկ իմաստասէրքն հանեալ են ի յութէն զընդունելութիւնն, զդերանունն և զյաւդն,— գրում է նա,— զի **այս երեքս ընդ անուամբ և ընդ բայիւ անկանին**»[74]: Վարդան Արևելցին (ինչպես և Դավիթը) իբրև ապացույց իր այս պնդման վկայակոչում է Արիստոտելի խոսքիմասային ըմբռնումը՝ ցույց տալով, թե Արիստոտելը ի՛նչ է հասկացել խոսքի հնգյակ մասեր ասելով. «Այլ և Արիստոտէլ հինգ ասաց՝ **անուն, բայ, ստորասութիւն, բացասութիւն, բացերևակութիւն**»[75]: Պարզվում է, որ Արիստոտելը իբրև խոսքի մաս ընդունել է ոչ միայն անունը և բայը, այլև **դրական դատողություն արտահայտող նախադասությունը** («ստորասութիւն»), **ներքում պարունակող նախադասությունը** («բացասութիւն») և **առհասարակ դատողություն արտահայտող նախադասությունը** («բացերևակութիւն»)։ Այս նշանակում է, որ արիստոտելյան ըմբռնումը «խոսքի հնգյակ մասերի» վերաբերյալ իր ելակետային հիմքում ոչ մի ընդհանրություն չունի «խոսքի մասերի» **քերականագիտական** ըմբռնման հետ, այլ պարզապես առնչվում է տրամաբանական հասկացությունների ու կարգերի հետ։ Վարդան Արևելցիու այս վրիպումը առավել բացահայտ է նկատելի այն պատճառով, որ նա նույնիսկ փորձում է «համոզել» ընթերցողին, թե Արիստոտելը և քերականները սկզբունքային նույն դիրքավորումն ունեն «խոսքի մասերի» որոշման հարցում՝ միայն ա՛յն տարբերությամբ, որ Արիստոտելը եթե «ընդունելությունը», «դերանունը» և «հոդը» խոսքի մասերից դուրս է հանել, ապա այդ միայն նրա համար, որ դրանք, իբր, մյուս խոսքի մասերի **մասերն են**...: Այդպես էլ նա գրում է. «Տեսանե՞ս, զի Արիստոտէլ վասն այնորիկ եհան զերեք յութէն, զի այն երեքն չեն մասունք, այլ՝ **մասանց մասունք**»[76]:

ԱՆՎԱՆ ԲՆՈՒՅԹԸ երկակի է դիտվում Վարդան Արևելցու քերականական մեկնության մեջ. ա) **թանձրացական**. այդ այն անունն է, որի նշածը տեսանելի է և շոշափելի, այդ պատճառով էլ կոչվում է «մարմնական անուն». և բ) **վերացական**. այդ այն անունն է, որի նշածը հայեցողությամբ է մտածվում և ընկալելի էականջով, այդ պատճառով էլ կոչվում է «իրային անուն», այսինքըն՝ «գաղափարային անուն». «Եւ մարմին է այն, որ բռնի ձեռամբ և շաւշա-

72 Սույն աշխատությունը, էջ 102։

73 Նույն տեղում, էջ 101։

74 Նույն տեղում, էջ 101—102։

75 Նույն տեղում, էջ 102։

76 Նույն տեղում։

փի, որպէս՝ ծառ կամ փայտ։ Եւ իրն անմարմին է՝ անըմբռնելի և անշաւշափելի, բայց միայն լսելեաւք, որպէս ինքն ասէ, թէ՝ խրատ կամ ճաննար կամ իմաստութիւն»[77]։ Այս հարցադրումն ունեն նաև Դավիթն ու Անանուն մեկնիչը. նրանց նկատմամբ Վարդան Արևելցին մասամբ զիջում է, երբ բնութագրում է վերացական անունը իբրև միայն լսողությամբ ընկալելի երևույթ. մինչդեռ և՛ Դավիթը, և՛ Անանունը վերացական անունը համարում են այն, ինչ մտածվում է և լսողությամբ ընկալվում[78]։ Իսկ թե՛ թանձրացական և թե՛ վերացական անունների ցույց տված հարաբերությունների բացահայտումը առարկայական և իմացական աշխարհի երևույթների նկատմամբ՝ իրենց ծավալային տարբեր ընդգրկումների նշումով, առավել ամբողջական և սպառիչ է Վարդան Արևելցու մոտ։ Ըստ այսմ՝ «մարմնական» կոչված անունը ցույց տված իր հարաբերությամբ դեպի առարկայական աշխարհը կարող է նշել առանձինը հարանման երևույթների մեջ («յատկապէս») և կարող է նշել ընդհանուրը, որը բաժանվում է առանձինների. «Իսկ յատկապէս՝ որպէս ճարտասան և կամ թուական (իմա՝ թվաբան, ἀριθμητικός իմաստով — Լ. Խ.) և կամ այլ արհեստք, որ յատկապէս առանձնանան և իւրեանց սահմանան երևին։ Իսկ հասարակաբար ասէ զընդհանուր մարդն... — այս ի վերայ մարմնոցն»[79]։

Ինչ վերաբերում է վերացական («իրային») անուններին, ապա դրանք իրենց ցույց տված հարաբերությամբ դեպի իմացական վերացական հասկացությունները՝ կարող են նշել միայն ընդհանուրը, «հասարակաբար», այլ կերպ ասած՝ «իրային անունները» հավաքական՝ ընդհանրական հասկացություններ են արտահայտում. «Իսկ ի վերայ անմարմնոցն՝ որպէս մակացութիւն կամ խրատ, առէնճ և կամ իմաստութիւն, որ են բանի զաւրութիւնք անմարմինք,— և այս հասարակաբարն է»[80]։

Անվան քերականական հատկանիշներն են, ըստ միջնադարյան մեր քերականագիտության՝ «սեռք»-ը, «տեսակ»-ը, «ձևք»-ը, «թիւք»-ը և «հոլով»-ը։

«Սեռք»-ը վերաբերում է միայն այն լեզուներին, որոնք օժտված են անվան քերականական սեռի հատկանիշով. այդպիսիք են՝ հունարենը, լատիներենը, ռուսերենը և այլն։ Վարդան Արևելցին «սեռք» տերմինը ըմբռնում է որպես «ազգ»՝ սեռ իմաստով (հն. γένος)։ «Սեռքն «ազգն» է, զի անճելականք են սերմամբ երկոքինն ի միասին»[81]։ Այս պատկերացումը, անշուշտ, երևույթի կենսաբանական իմաստավորմամբ առաջացած ըմբռնում է, քանի որ լեզվական իրողությունը բացատրվում է կենսաբանական օրինաչափություններով։ Այստեղից էլ հակամետություն՝ լեզվական իրողությունների մեջ տեսնելու, առանձին դեպքերում, նույն երևույթները, ինչ երևույթներ առկա են կենսաբանության մեջ։ Այդ իսկ պատճառով Վարդան Արևելցին և նրա նախորդ մեկնիչներից շատերը առանձին լեզուներում քերականական սեռի մասին գիտական պատկերացում չունեն. Նրանք քերականական սեռի հասկացությունը նույնացնում են բնական սեռի հասկացության հետ։ Մինչդեռ դրանք բոլորովին տարբեր բաներ են։ Նման մոտեցումը գալիս է, անշուշտ, դեռևս Դիոնիսիոս Թրակացուց. բայց այն չափով, որչափով հունարենի բառանվանումնե-

77 Նույն աշխատությունը, էջ 102։

78 Տե՛ս Ն. Ադոնց, նշված աշխատ., էջ 103, 139։

79 Տե՛ս սույն աշխատությունը, էջ 102։

80 Նույն տեղում։

81 Նույն տեղում, էջ 103։

րում արտահայտված քերականական սեռի բացատրությունը (ճիշտ կամ սխալ) անհրաժեշտաբար պետք է տալ, այդ չափով նման հարցադրման քննումը արդարացվում է հայ քերականական մեկնություններում։ Բայց և այնպես հայերենի իրողությունների հիման վրա արված սեռի ամեն մի բացատրություն սկզբից ևեթ անհեթեթ էր լինելու։ Այդ պատճառով էլ առանձին բառանվանումների քննությամբ տրված անվան քերականական սեռի հասկացության մեկնությունը ստացել է զուտ կենսաբանական «հիմնավորում», որն աղերս չունի, ինչպես վերը ասվեց, արդեն զարգացման երկար ուղի անցած լեզուների քերականական սեռի հետ։ Այսպես, բացի արական և իգական սեռերից, Վարդան Արևելցին մատնացույց է անում նաև «հասարակ» և «անհասարակ», ինչպես և «մակաւասար» սեռերը։ Ըստ որում «անհասարակ» սեռ ասելով նա հասկանում է չեզոք սեռի գոյական անունները, ընդսմին՝ չեզոք սեռի տակ ըմբռնելով այնպիսի բառանվանում, որ նշում է դեռևս չկազմավորված՝ սաղմնային վիճակում գտնվող կամ անչափահաս մարդուն, որը գրաբարում արտահայտվում է «տղայ» բառով. «Իսկ չէզոքն անհասարակն է՝ որպէս տղայն»[82]։ «Հասարակ» սեռ ասելով Վարդան Արևելցին ըմբռնել է այն բառանվանումները, որոնք միևնույն բառաձևով նշում են կենդանիների և՛ արական, և՛ իգական սեռերը հավասարապես. «Եւ հասարակականն է՝ որպէս ձին և շունն, զի անուամբ ասին ձի՝ թէպէտ որձն և թէպէտ մատակն։ Նոյնպէս և շունն հասարակական մի անուն է՝ որձն և էգն, և վասն այսորիկ ասի հասարակաբար»[83]։ Ինչ վերաբերում է «մակաւասար» սեռին, ապա դա այն բառանվանումն է, որով նշված կենդանու սեռը ճանաչել անհնարին է, այդ պատճառով էլ այդ սեռը գերադաս («մակաւասար») է դիտվում, քան «հաւասար» կամ «հասարակ» կոչված սեռը. «Իսկ մակաւասար է՝ որ ի վեր է քան զհաւասար, որպէս ծիծառն և ախիւն, զի ոչ ոք կարէ ճանաչել ի ծիծառն կամ ի յաքիսն, թէ ո՞ր է որձն և կամ ո՞ր է էգն»[84]։

Անվան քերականական հատկանիշներից «տեսակ»-ը ըմբռնվում է բառակազմության տեխնիկայի առումով, իսկ բառակազմության փոփոխությունները, ինչպես հայտնի է, պատճառ են դառնում տվյալ բառի խոսքի մասային անցումների, ուստի և օժտում տվյալ բառը համապատասխան քերականական հատկանիշներով։ «Տեսակ» քերականական տերմինի տակ միջնադարյան մեր քերական մեկնիչները, այդ թվում և Վարդան Արևելցին, հասկացել են՝ 1) արմատական բառերը և 2) ածանցավոր բառերը։ Արմատական բառը կոչել են «նախագաղափար», իսկ ածանցավորը՝ «ածանցական»։

Եթե «նախագաղափար» բառերի էությունը հասկանալի է և առանձին խմբավորումների դասդասման ենթակա չէ հայերենում բառակազմության տեսակետից, ապա «ածանցական» բառերի խմբավորումները, ըստ միջնադարի հայ քերականագիտության, պարփակվում են յոթ դասդասումներում։ Դրանցից կանգ կառնենք միայն «Հայրանունական» բառատեսակի վրա, որի կապակցությամբ ուշագրավ նոր միտք է հայտնում Վարդան Արևելցին։ «Հայրանունական» բնույթի ածանցավոր բառերը նրանք են, որոնք ցույց են տալիս ազգանուն։ Վարդան Արևելցին «հիմնավորում» է այս կարգի բառակազմությունները նրանով, որ ինչպես որդիները «բնությամբ» սերվում են իրենց

82 Սույն աշխատությունը, էջ 103։

83 Նույն տեղում։

84 Նույն տեղում։

*հայրերից, այնպես էլ նույն աղերսակցությունը պետք է կրեն նրանք նաև ան-*
վանապես, *որովհետև քաջերի որդիները նախամեծար կհամարեն կոչվել իրենց հայրերի անունով. մինչդեռ սովի սեփական («գլատկական») անունով հորջորջվելը Վարդան Արևելցին անպատվաբեր է համարում՝ «գռեհական», քանի որ նման անվանումները չեն աղերսվում «մեծարանքի» գաղափարով պայմանավորված սերնդահաջորդականության հետ. «Տեսանե՞ս զտեսակացն զյոլովութիւնն և զանունն,— գրում է նա.— զի հայրանունական ասի, վասն զի քաջացն որդեացն հարկաւ զհայրական և զնախնեացն զանունսն յառաջ բերեն, և ոչ՝ զյատկականն, զի գռեհական և չինական է և այլանձ. զի* որպէս բնութեամբ ճաղորդ են նախնեացն, նոյնպէս և անուամբ պարտ է լինել և ասիլ»[85]: *Ինչպես նկատելի է ընդգծված տողերից, քերականագիտական հարցերի լուծման ժամանակ կենսաբանական երևույթների ու օրինաչափությունների մեխանիկական տարածումը լեզվա-քերականագիտության բնագավառի վրա՝ չափազանց ակնբախ է։*

*«Հայրանունական» խմբավորման մեջ չեն մտնում* ճատուկ *անունները և ա՛յն ազգանունները, որոնք կազմվում են ոչ թե անմիջապես հոր, այլ պապի կամ «նախնեաց» անվան փոխառմամբ. այդ դեպքում նրանք կոչվում են «պիտակապէս», այսինքն՝ ոչ անմիջական (բառացի իմաստով՝ «անհարազատ»). «Պիտակապէս ասէ՝ որ ի նախնեացն անուանէ կոչեն, որպէս՝* Հեթում *արքայի որդին* Լեոն *կոչի ըստ նախնւոյն անուանն, և ո՛չ՝ ըստ հաւրն իւրոյ* Հեթում: *Եւ կամ որպէս* զՀամազասպեանն, *որ* Համազասպայ *որդւոյն* Համախեան *դնի, որ զառաջին վանդն, այսինքն՝* զՀամն *ի հաւրն ի յանուանէն առնու, և կամ որպէս Մանուիլեանցն* Մանան՝ *հայրն, և* -էլն՝ *որդին»*[86]։

*Ի տարբերություն նախորդ քերական մեկնիչների, որոնք գտնում են, որ եթե Հոմերոսը կանանց ազգանունը չէր օժտում հայրանվամբ, պատճառն այն էր, որ իգական սեռի ներկայացուցիչները «նվաստ» և «անարժան»*[87] *են դիտվել արական սեռի ներկայացուցիչների հարաբերությամբ, և արձանագրում միաժամանակ, որ միայն հետագա «համբակագույն քերդող»-ները*[88] *սկսել են կանանց ազգանուններին հատկացնել իրենց հայրանունները, մինչդեռ Վարդան Արևելցին հանդես է գալիս իբրև մարդկային երկու սեռերի* ճավասարության ջատագով: *Նա ընդգծում է այն կարևոր միտքը «նորահասակ իմաստունների» բերանով, որ իգական սեռի ներկայացուցիչները աշխարհիկ հոգսերում տղամարդկանց հետ «հաւասարորդ» են և «կարեկից», այդ իսկ պատճառով նրանք «պատուակից» են տղամարդկանց, ուրեմն և իրավունք ունեն «պճնելու» իրենց ազգանունները հայրանուններով. «Տեղեակ առնէ,—գրում է Վարդան Արևելցին,—թէ Հոմերոս հարցն անուամբն ոչ զարդարէր զէգ ազգն, վասն զի չառնէր արժանի, որ հարցն անուամբն անուանէր զդստերսն, այլ ի յետոյ նորահասակ իմաստունքն ասացին, թէ* որպէ՛ս ամենայնիւ ճաւասարորդ և կարեկից են ի պէտս աշխարհիս, նոյնպէս և այսու այլ պարտ է պատուակից լինել և ճարցն անուամբն պճնիլ»[89]:

*Անվան երրորդ՝* թվական *հատկանիշը Վարդան Արևելցին, ավանդության*

---

[85] *Նույն աշխատությունը, էջ 104։*

[86] *Նույն տեղում, էջ 105։*

[87] *Տե՛ս Ն. Ադոնցի նշված աշխատ., Դավիթ քերական, էջ 105։*

[88] *Տե՛ս նույն տեղում, Անանուն մեկնիչ, էջ 140։*

[89] *Նույն աշխատությունը, էջ 106։*

կարգով, իր նախորդների հետևողությամբ նույնպես թվարկում է, իբրև ցուցադրական օրինակ, բացի եզակի և հոգնակի քերականական թվի կարգերից, նաև երկակի թվի կարգը. բայց մեկնելիս Վարդան Արևելցին մատնացույց է անում, որ երկակի թվի կարգը հատուկ է հունարենին և լատիներենին՝ ճիշտ այնպես, ինչպես նրանց հատուկ է քերականական սեռը. «Զի յորժամ ասես Պետրոս՝ վասն միոյ ասացեր. իսկ Պետրոսք՝ յաղագս բազմաց։ Իսկ Պետրուն զերկուորականն ցուցանէ, որպէս թէ առու և կամ այլ ինչ այսպիսի, վասն զի հելլենացիք, յոյնք և հռովմայեցիք յոյժ ընտրութիւն առնեն վասն միաւորին և երկուորականին»[90]:

Վարդան Արևելցուց առաջ միայն Ստեփանոս Սյունեցին այն կարևոր միտքն է հայտնում, որ հայերենին հատուկ են միայն եզակի և հոգնակի քերականական թվի կարգերը. «Իսկ ի հայումս զեզական և զբազումս միայն կարեն նշանակել անուանք, որպէս Պետրոս և Պետրոսք, մարդ և մարդիկ, աստուած և աստուածք, և ամենայն այսպիսիքս»[91],—գրում է Ստեփանոս Սյունեցին։ Իսկ Անանուն մեկնիչը «առավելություն» է համարում երկակի քերականական թվի առկայությունը հունարենում, և «շնորհ»՝ հույն բանաստեղծների. «Եւ պարտ է գիտել,— գրում է նա,—եթե երկուորականն ըստ լեզուոյ ոչ է, այլ հարստութեանն աթենացւոցն և նոցին քերթողաց»[92]: Մինչդեռ Վարդան Արևելցին, համերաշխվելով Ստեփանոս Սյունեցու տեսակետի հետ, միաժամանակ ուղղակիորեն հակադրվում է Անանուն մեկնիչի պնդմանը՝ արտահայտելով լեզվաբանական այն արժեքավոր դրույթը, ըստ որի լեզվի քերականական միջոցներով բեռնվածությունը ոչ թե նրա «հարստության» ցուցանիշն է, այլ՝ աղքատության, այն է՝ անզարգացածության։ Եվ ընդհակառակն՝ լեզվի զարգացածության և «արձակ» լինելու ցուցանիշը՝ նրա ձերբազատումն է քերականական միջոցների անհարկի ծանրաբեռնվածությունից։ Տեսական այս կարևոր ըմբռնումը չկա իր նախորդներից և ոչ մեկի մոտ։ Այս առթիվ Վարդան Արևելցին գրում է. «Իսկ մեր ազգս ոչ ունի այսպիսի քննութիւն (իմա՝ երկակի քերականական թիվ—Լ. Խ.)՝ վասն փարթամութեան և արձակ լեզուիս մերոյ»[93]:

Անվան չորրորդ հատկանիշը հոլովական քերականական կարգն է դիտվում, որն արտահայտվում է, ըստ քերական մեկնիչների, վեց հոլովներով. դրանք են՝ ուղղականը, սեռականը, տրականը, առաքականը, հայցականը և կոչականը (հին տերմինով՝ «հոչական»-ը)։

Վարդան Արևելցին նշված հոլովների իմաստային բովանդակությունը բացահայտելիս մեկնում է հետևյալ կերպ.

ա) Ուղղական հոլովը նա միանգամայն ճիշտ կերպով դիտում է անվան ուղիղ ձևը. «Ուղղական ասէ, զի անուամբ ուղղի ամենայն։ Եւ անու[ա]նականն պարզ է, որպէս որ ասես՝ Սմբատ, Գրիգոր...»[94]:

բ) Սեռական հոլովը, ըստ Վարդան Արևելցու պատկերացման, նշում է ընդհանուր առարկայական հասկացությունը, որից սերվում են բազմաթիվ մասնակիներ կամ առանձիններ։ Ըստ միջնադարյան փիլիսոփայական ընդհանրացման՝ ընդհանուրից սերում են մասնակիները կամ առանձինները, այդ

90 Սույն աշխատությունը, էջ 110։
91 Ն. Ադոնց, նշված աշխատ., էջ 206։
92 Նույն տեղում, էջ 142։
93 Սույն աշխատությունը, էջ 110։
94 Նույն տեղում, էջ 111։

պատճառով էլ ընդհանուրը միաժամանակ դիտվում է իբրև «սեռական». «Իսկ սեռականն որպէս ընդհանուր՝ կենդանին»[95]: Բնականաբար՝ «սեռականի» նման բացատրությունը ոչ թե քերականագիտական տեսանկյունով է տրվում, այլ՝ փիլիսոփայական։ Վարդան Արևելցին սեռականի վերաբերյալ տալիս է մի այլ մեկնություն ևս, որը նույնպես շատ հեռու է սեռականի քերականագիտական ըմբռնումից. նա որտեղացի լինելը, ինչպես և տոհմային սերումը ցույց տվող բառերը համարում է սեռական. «Որպէս տարօնացի, սելկկացի և կամ կեսարացի և կամ որպէս ի հայրական սեռէ, որպէս՝ Պահլաւունի, Բագրատունի և կամ այլ այնպիսիք»[96]։ Նման մոտեցման ելակետը, ինչպես տեսնում ենք, ոչ թե քերականական է, այլ՝ բառագիտական, այն է՝ բառական այն իմաստը, որով ծագման և սերման հարաբերություն է արտահայտվում։

գ) Տրական հոլովը Վարդան Արևելցին բացատրում է «մեկին մի բան տրված լինելու» բառիմաստային նշանակությամբ. «Եւ տրականն՝ որպէս Աստուածատուր կամ Տիրատուր»[97]: Նա համեմատելով այս տերմինը հունարենում ունեցած իմաստի հետ, գտնում է, որ հունարենում այն նշանակել է «թղթական», իսկ հայերենում՝ «պատուիրական», այլ կերպ ասած՝ այդ ա՛յն դեպքն է, երբ հանձնակատար անձնավորությանը, իբրև նվիրակ, պաշտոնական գրությամբ լիազորություն է տրվում գնալու այսինչ գավառը կամ երկրամասը «Տրականն ըստ յունացն «թղթական» ասի, որպէս զերդ ասես «թղթաւոր» և կամ «թղթաբեր» եւ ըստ մեզ՝ տրականն «պատուիրական» ասի, իբր թէ տուեալ լինի ումեք իշխանութիւն և առաքեալ ի գաւառ և յաշխարհ հրամանաւ թագաւորի կամ հայրապետի, և ըստ այնմ իրացն և զանունն կոչեն՝ ասելով նուիրակ կամ պատուիրաւղ»[98]: Այստեղ նույնպես, ինչպես դիտելի է, տրականի մեկնությունը տրվում է ոչ թե նրա քերականագիտական իմաստի բացահայտմամբ, այլ միայն՝ նրա բառական իմաստի արտահայտած հարաբերության նշումով։

դ) «Առաքական» տերմինով հայ քերական մեկնիչները ըմբռնել են գործիական և բացառական հոլովները միաժամանակ. պատճառն այն է, որ լատիներենում ablativus հոլովով միաժամանակ արտահայտվում են և՛ բացառական, և՛ գործիական քերականական իմաստները։ Վարդան Արևելցին չի անդրադառնում «առաքական»-ի հոլովական նշանակություններին, այլ միայն տալիս է դրա բառական իմաստը. «Առաքականն՝ որպէս դեսպան կամ առաքեալ»[99],—գրում է նա։

ե) «Հայցականի» և՛ բառական, և՛ հոլովական իմաստներն է քննում Վարդան Արևելցին՝ համեմատության մեջ դնելով նրա հոլովական իմաստը հունարենի համապատասխան հոլովական իմաստի հետ։ 1) Բառական իմաստը. «Հայցականն՝ որպէս խնդիրք կամ յոյզք»[100]։ 2) Հոլովական իմաստը. Վարդան Արևելցին, Դավթի հետևողությամբ[101], հայցականի քերականական իմաստի դրսևորման իբրև էական պայման համարում է նրա ոչ թե ուղղակի խնդիր հանդիսանալու իրողությունը, այլ՝ խնդրվածի ձեռքբերումը կամ «նպա-

---

95 Սույն աշխատությունը, էջ 111։

96 Նույն տեղում։

97 Նույն տեղում։

98 Նույն տեղում, էջ 112։

99 Նույն տեղում, էջ 111։

100 Նույն տեղում։

101 Տե՛ս Ն. Ադոնց, նշված աշխատ., էջ 108։

տակայնությունը», և այդ պատճառով էլ վրիպում է. «Իսկ հայցականն, որ ասի խնդրական,— գրում է Վարդան Արևելցին,— որպէս՝ Աննա, որ զորդւոյն անունն Սամուէլ կոչեաց, որ թարգմանի «խնդիրք», զի հայցեաց յաստուծոյ և էառ։ Եւ որ ասէ ըստ հելլենացւոց լեզուին փաստական, որ է «պատճառական», իբր թէ կոչես զոք ի բարի կամ ի չար, զի բարին և չարն պատճառ է կոչեցելոյն, զի թէ ասես, թէ միայն՝ ե՛կ, այդ անփաստ է. և թէ ասես՝ ե՛կ ի չար և կամ ի բարի, ապա զփաստն ասացեր՝ յայտնելով զպատճառն, թէ յինչ կոչեցեր՝ ի յո՞րս, ի հո՞ւնձ և կամ թէ՝ ե՛կ ի պահ»[102]։ Ինչպես քաղվածքից հետևում է, Վարդան Արևելցին ճիշտ պատկերացում չի ունեցել այն մասին, որ հայցական հոլովով անունը հանդես է գալիս ներգործական սեռի բայերի հետ, այդ պատճառով էլ նրանք ուղիղ խնդիր են լինում՝ գործողությունը իրենց վրա կրող խնդիր. մինչդեռ Վարդան Արևելցու բերած լեզվական նմուշներում բայ-ստորոգյալը չեզոք սեռի է («եկ») և նրա ցույց տված գործողության նպատակայնության պարագաները նախդրավոր հայցականներ են, և ոչ թե՝ ուղիղ խնդիր հայցականներ։

գ) Վարդան Արևելցին, ընդհանուր հարցադրման առումով, ճիշտ է հասկանում «հոշական» (իմա՝ կոչական) «հոլովի» իմաստը. «Իսկ հոշականն՝ հիացական ասի և կամ կոչած իրք և եկած»[103]։ Բայց այս դրույթի հիմնավորումը տալիս, պարզվում է, որ Վարդան Արևելցին ոչ թե քերականագիտական տեսանկյունով է ըմբռնում այն, այլ՝ սոսկ բառական. «Հոշականն «կոչական» ասի. և զի՞ ասէ զհոշականն «առասական», որ է հասարակ անուն, որպէս յորժամ ասես՝ մարդ կոչեա առ իս և կամ կին, որ է հասարակ անուն, երբ չասես, թէ՝ կոչեա՛ զԼևոն կամ զՍարգիս, զՇուշան և կամ զԹամար...»[104]: Բացի այդ, նկատի չի առնված, որ հայերենում կոչականը հոլովական հարացույցի բաղկացուցիչ մաս չի կազմում՝ նախադասության անդամ չհանդիսանալու պատճառով։

Այս բոլորից հետևում է, որ Վարդան Արևելցին հոլովների տեսության հարցում ելնում է, հիմնականում, հոլովների ըմբռնման բառական իմաստներից։

Նշենք, սակայն, որ հոլովների տեսության նման մակարդակը, տվյալ ժամանակաշրջանի համար, շատ բնականոն է. այլ կերպ չէր էլ կարող լինել։ Բանն այնէ, որ հոլովների քերականագիտական ըմբռնումը վերացարկման ամենաբարձր աստիճաններից է, իսկ դրան հասնելը հնարավոր է գիտական մտածողության զարգացման պրոցեսում ոչ թե միանգամից, այլ միայն աստիճանաբար՝ պատմական օրինաչափ զարգացմամբ։

Անվան հինգերորդ հատկանիշը, ըստ միջնադարյան քերական մեկնիչների, այդ թվում և Վարդան Արևելցու, անվանը ստորադասվող «տեսակ» կոչվածի քերականագիտական ըմբռնումն է, որն ընդգրկման տարողությամբ զարմանալիորեն համապարփակ է, և իր բնույթով՝ չափազանց խայտաբղետ։ Դրանցից հատկապես կանգ կառնենք «առասական» և «իսկ» անվանատեսակների վրա, որոնց առնչությամբ հետաքրքիր և արժեքավոր հայացք է զարգացնում Վարդան Արևելցին։

«Առասական» քերականական տերմինի տակ ըմբռնվում է հասարակ ա-

---

102 Սույն աշխատությունը, էջ 112։

103 Նույն տեղում, էջ 111։

104 Նույն տեղում, էջ 112։

նունը՝ որպես առանձին բառախմբի «տեսակ». սա նույնպես անվանը՝ որպես առավել մեծ հասկացությանը, ստորադասվող և նրանում ընդգրկվող հասկացություն է, ուստի և հանդիսանում է նրա տարատեսակը, ընդսմին և ամենամեծ տարատեսակը: Այս առթիվ Վարդան Արևելցին քննում է անտիկ մտածողներից Պլատոնի և Արիստոտելի տեսական վեճը «իսկ»-ի (իմա՝ հատուկ անվան) և «առասական»-ի մասին, որն արծարծվել է ծագումնաբանորեն դրանցից մեկն ու մեկի առաջնայնության հարցը որոշելու կապակցությամբ: Պլատոնը ծագումնաբանորեն առաջնայինը համարում է «առասականը»՝ իբրև կռվան ընդունելով նրա «ընդհանուր» լինելը: Արիստոտելը, ընդհակառակն, ծագումնաբանորեն առաջնային է համարում «իսկը»՝ այն պատճառաբանությամբ, որ դա կոնկրետ է, շոշափելի և մատերիական, մինչդեռ «առասականը» աբստրահումով կատարված վերացրում է. և Վարդան Արևելցին անվերապահ պնդումով պաշտպանում է Արիստոտելի տեսակետն այս հարցում. «Սակս **իսկիդ** և **առասականիդ** վեճ եղև,— գրում է նա,— վասն զի Պղատոն **զառասականն** յառաջ ասաց, քան **զիսկն** ժամանակաւ՝ որպէս ընդհանուր և նախագաղափար: Եւ Արիստոտէլս **զիսկն** յառաջ ասաց՝ զՄարկոսն կամ զՍմբատն, զի զո՛ր տեսանես՝ ա՛յն է հաստատուն»[105]: Որքան էլ անհարիր է քրիստոնեական աշխարհայացքի հիմնարար դրույթներին, բայց և փաստ է, որ Վարդան Արևելցին, Դավթի հետևողությամբ[106], ստուգապես ճանաչելի և իմանալի է համարում ոչ թե անտեսանելին, միստիկը, այլ՝ տեսանելին ու շոշափելին. «Զքո մերձակայն՝ քան զանցած մարդկութիւնն, զլուեալն և զչտեսեալն. զի զարեգակնն չկարէ ոք ուրանալ զոր տեսանէ, բայց զչտեսած իրն բազումք ուրանան: Եւ **իսկն** է ստոյգն, յատուկն, մէկն, և **առասական** է ընդհանուրն, հասարակն և ազգն»[107]: Հարկ է նշել, որ տվյալ ժամանակշրջանի համար չափազանց ուշագրավ հայեցակետ է պաշտպանում Վարդան Արևելցին, երբ, առաջ անցնելով Դավթից՝ այս նույն միտքը ընդհանրացնող ձևակերպմամբ իբրև աքսիոմատիկ ճշմարտություն է ներկայացնում, որն, ըստ էության, մատերիալիստական ելակետային սկզբունք է՝ ի հակադրություն միստիկականի, որ և նույնն է՝ իդեալիստականի. «Զի **զո՛ր տեսանես՝ ա՛յն է հաստատուն**»[108],—հանդիսավորապես հայտարարում է նա: Բայց չէ՞ որ ենթադրյալ գերբնական էակը, որը քրիստոնեական աշխարհայացքի ելակետն ու վախճանակետն է՝ անտեսանելի է..., ուրեմն և կասկածելի է աստծո գոյությունն առհասարակ...: Նման հարցադրումը, անշուշտ, խփում է ակամայից և օբյեկտիվորեն քրիստոնեական աշխարհայացքի հիմքերի հիմքին: Ինչպես տեսնում ենք՝ արված է չափազանց համարձակ ու խիզախ մի պնդում, որից ինքնին բխող հետևությունները դժվար է նույնիսկ գերագնահատել:

ԲԱՅԻ խոսքի մասային ըմբռնումը մեկնաբանելիս, Վարդան Արևելցին, ինչպես և առհասարակ մեր բոլոր քերական մեկնիչները, անդրադառնում է նախ և առաջ նրա ձևաբանական առանձնահատկություններին՝ քերականական իմաստների որոշմամբ: Դրան նա ձեռնամուխ է լինում անվան քերականական կարգի հետ զուգահեռներ անցկացնելու միջոցով. ընդսմին՝ ենթատեքս-

105 Նույն աշխատությունը, էջ 114:

106 Տե՛ս Ն. Ադոնց, նշված աշխատ., էջ 108:

107 Նույն աշխատությունը, էջ 114:

108 Նույն տեղում:

տից լռելյայն բխում է Վարդան Արևելցու և միջնադարյան մեր բոլոր քերական մեկնիչների ելակետային այն գերիշխող հայեցակետը, որ, վերջին հաշվով, խոսքի մասերի մեջ առանցքային քերականական կարգերը երկուսն են՝ անունն ու բայը, որոնք իրենց շուրջն են ձգողաբար ընդգրկում խոսքի մյուս մասերը։ Հենց այդ պատճառով էլ միջնադարի քերական մեկնիչները համակողմանի և առանձնահատուկ քննության են առնում, մի կողմից անվան և բայի բառիմաստային ամենաընդհանուր ու բազմազան նշանակությունները, մյուս կողմից՝ խոսքի մասային քերականական հատկանիշները։

Եթե միջնադարի քերականական մեկնությունների շարադրանքում անվան քննությունը նախորդում է բայի վերլուծությանը, ապա նման մոտեցումն ունի իր սկզբունքային պատճառաբանությունը, որին և անդրադառնում է Վարդան Արևելցին։ Բանն այն է, որ անունը, իբրև երևույթներ կամ առարկաներ նշող բառ, փիլիսոփայական ըմբռնմամբ՝ «էություն» է համարվում, իսկ բայը, իբրև գործողություն նշող բառ՝ «հատկանիշ» (միջնադարի մեր դպրության տերմինով՝ «պատահումն»). և քանի որ ընդունված աներկբայելի ճշմարտություն է, որ «էությունը» միշտ առաջնային է, իսկ հատկանիշը՝ երկրորդային, հենց այս նկատառումով էլ, բնականաբար, քերականական մեկնություններում առաջին հերթին պետք է լուսաբանվեր «անունը» իր առանձնահատկություններով, հետո նոր՝ բայը. «Նախ՝ զանունն ասաց, և ապա՝ զբայն,—գրում է Վարդան Արևելցին,—զի անունն էութիւն է, իսկ բայ՝ պատահումն։ Եւ յառաջ է էութիւնն, քան զպատահումն»[109]։

Բայը միաժամանակ բառ է. նա նույնպես օժտված է նշանակողական գործառույթով (ֆունկցիայով)՝ առարկայի փոփոխվող հատկանիշներն է լեզվականորեն հաղորդում, դրա համար էլ «բայն «ասութիւն» ասի»[110]։

Բայի առավել նեղ ըմբռնումը հավաստում է ոչ միայն որպես փոփոխվող հատկանիշ, այլև իբրև առարկա ցույց տվող հիմնական ձևույթ։ Թրակացու այն ճիշտ դիտումը, որ բայը լինելով բառ (նշանակողական իր գործառույթի շնորհիվ), ընդհանրության մեջ է գտնվում իր այդ կողմով անվան հետ որպես բառ, բայց և լինելով «անհոլով»՝ տարբերվում է նրանից, Վարդան Արևելցին բայի հենց այս երկվությունը մեկնաբանել փորձելիս բռնազբոսիկ դատողություններ է անում, ուստի և վրիպում է. նա ճիշտ կերպով գտնում է, որ զաւ–րու–թիւն բառաձևում –թիւն բառակազմական ածանցը անվանակերտ է, որովհետև այն միաժամանակ հոլովվածություն է հաղորդում բառին։ Բայց և նրան թվում է, թե այդ ածանցը զեղչելիս զաւրու հնչյունախումբը կլինի «բայ», քանի որ այդ ձևով «անհոլովելի» է դառնում այն. իսկ եթե անհոլովելի է, ապա, ըստ Թրակացու ասույթի, նաև բայ է։ Նույն տրամաբանական վերլուծությամբ՝ «Դաւ-իթ» բառաձևում «իթ»-ը դիտվում է որպես անվանակերտ ածանց, ուստի և ամբողջ բառը հոլովելի է համարվում, իսկ «դաւ»-ը՝ բայ, քանի որ անհոլովելի է...։ «Եւ զի՞ ասէ, թէ բայ է բառն։ Բառն յերկու և յերեք վանգից գոյանայ,— ասում է Վարդան Արևելցին,— զաւ–րու–թիւն բառ է, բայց ասէ, թէ անհոլով <է>, այսինքն՝ անտապալ, անշուրջ։ Զի զաւ–րու բայ է, և թէ զթիւնն դնես՝ հոլովի և բառ լինի։ Եւ դարձեալ անհոլով ասաց, զի զատուսցէ յանուանէն, վասն զի անունն հոլովական է՝ Դաւ–իթ անուն է. դաւն բայ է՝

109 Նույն աշխատությունը, էջ 123։

110 Նույն տեղում։

*ընդունակ ամանակաց, դիմաց և թուոց»*[111]*։ Նման վերլուծությունը, անշուշտ, բայի մեխանիկական ըմբռնման արդյունք է։*

*Նշենք նաև, որ Վարդան Արևելցու մոտ կա ուշագրավ մի փաստ, որը կարևոր է հայերենի պատմական քերականագիտության համար, թեև իր մեկնաբանմամբ թերի է և սխալ։ Խոսքը վերաբերում է «գրենք» բայաձևին, որը, ինչպես հայտնի է, գրաբարի բայի խոնարհման համակարգին անհարազատ է, սակայն բնորոշ է միջին հայերենի և մանավանդ աշխարհաբարի համար. գրաբարի հարազատ բայաձևը* գրեմք *է, որը նույնպես թեև բերում է Վարդան Արևելցին, սակայն հակադրում է այն* գրենք *բայաձևին՝ ցույց տալու համար, որ «գրեմք» բայաձևը սահմանականի ներկա ժամանակն է արտահայտում, իսկ «գրենք» բայաձևը՝ ապառնի. «Եւ թէ ասես, թէ* գրենք՝ *ժամանակ զապառնոյն ընդունեցաւ բանն,—ասում է Վարդան Արևելցին,— և դէմք՝ զքոյդ և զայլոց թուով բազումք, զի ասացեր* գրենք: *Եւ թէ* եմք *ասես՝* գրեմք, *զներկայն ժամանակ նշանակեցեր»*[112]*։ Տվյալ դեպքում կարևորն այն է, որ Վարդան Արևելցին հավաստում է «գրենք» բայաձևի կազմավորումը դեռևս XIII դարի կեսերից՝ ապառնիության գաղափարով, որը և բնորոշ է ժամանակակից հայերենի համար...*

*Վարդան Արևելցին բայի թվական հատկանիշի մասին խոսելիս, իրեն նախորդած քերականների տեսակետում կարևոր ճշտում է մտցնում՝ ելնելով հայերենի լեզվական իրողություններից. նա առաջինն է, որ մերժում է հայերենում բայի «երկակի» թիվ ունենալու անճիշտ պնդումը՝ նման ենթադրությունը համարելով գիտունների կողմից կատարված «բռնադատություն». «Յայտնի է,— գրում է նա,— զի յոլով անգամ ասացած է, որ* երկուորականն կարկատ է և բռնադատութիւն է յիմաստնոց, զի չկայ ըստ մերում լեզուիս»[113]:

*Բայական կարգի վերաբերյալ մնացած բոլոր ըմբռնումներում Վարդան Արևելցին լիովին համերաշխվում է իր նախորդների դրույթների հետ։*

*ՀՈԴԻ ըմբռնումը չափազանց յուրովի հասկացություն է միջնադարի հայ քերական մեկնիչների մոտ. Վարդան Արևելցու պատկերացմամբ՝ «հոդերը» նույն դերն են կատարում լեզվում, ինչ մարդու օրգանիզմում «ջղերն» ու ոսկրահոդերը («կապք»), այն է՝ նրանք «կցում» և իրար են միացնում բառերն ու նախադասությունները. «Յաւդն «կցումն» և «միաւորութիւն» կոչի,* որպէս ջիլ և կապք մարմնոյն, այսպէս և յաւդ՝ բանի»[114]: *Հոդերի քերականական ըմբռնման ոլորտում են ընդգրկվում, ըստ միջնադարի քերական մեկնիչների, խոսքի մասերի բավականին խայտաբղետ տեսակներ. միասնական սկզբունքի բացակայությամբ պայմանավորված նման ճապաղությունը, բնականաբար, իր հետ բերում է քերականական իմաստների բռնազբոսիկ միացություն։ Այսպես, «հոդ» են համարվում և՛ կոչական բառերը* (ո, ով), *և՛ հարաբերական բառը* (որ), *և՛ ցուցական դերանունները* (այս, այդ, այն), *և՛ դերբայները* (արարող, արարած): *Խոսքի մասերի այս խայտաբղետ տեսակների ընդգրկումը քերականական մեկ կարգի մեջ՝ միաժամանակ պետք է ենթադրեր դրանցից յուրաքանչյուրին բնորոշ քերականական իմաստների ընդգրկումը։ Այդպես էլ ընդունում են միջնադարի մեր մեկնիչները իրենց քերա-*

---

[111] *Նույն աշխատությունը, էջ 123։*
[112] *Նույն տեղում։*
[113] *Նույն տեղում, էջ 125։*
[114] *Նույն տեղում, էջ 132։*



3—737

կանական հայացքների սիստեմում. «Հոդին» բնորոշ քերականական իմաստներն են դիտվում՝ «սերքը», «թիվը» և «հոլովը»: Վարդան Արևելցին «Հոդի» վերաբերյալ որքան էլ տուրք է տալիս ավանդական ըմբռնումներին, այնուամենայնիվ, նրա առանձին դիտողությունները, իրենց զգաստ և դիպուկ նկատառումներով, կարևոր ճշգրտումներ են մտցնում քերականական այս կարգի հայերենում ունեցած դրսևորումների ու նրա առանձնահատկությունների հետազոտման ու որոշման մասնակի հարցերում:

Առաջին ուշագրավ դիտողությունն այն է, որ բուն առումով հոդ հանդիսացող մասնիկները բնորոշ են «առավել» հունարենին, որի գոյական անունների և ածականների համապատասխան հոլովումների հետ միաժամանակ համապատասխան հոլովով դրվում են հոդերը, ընդսմին՝ իրենց դիրքով նախադասվում են գոյական և ածական անուններին. «Բայց ասելն «հոլովական նախադասեալ»՝ ըստ յունին առաւել բանի, քան մեզ, զի հոլովեն արական բառովն նախադասելով՝ ո՛վ Գրիգորիոս, ո՛վ Գէորգիոս»[115]:

Հունարենի հոդերից, իբրև գոյական անուններին առաջադիր ուղղական ձևով, հիշատակվում է միայն արականը՝ ὠ. «Յունացն բացարձակ մէկ գիր՝ ὠ. որ զարականն նշանակեն»[116]: Բայց չէ՞ որ հունարենն ունի նաև իգական սեռի ուղղականի համար՝ ἡ, չեզոքի համար՝ τὸ հոդերը, նույնպես առաջադիր և հոլովվող: Թեև վերջիններիս մասին Վարդան Արևելցին ուղղակի չի ակնարկում, բայց հունարենի նշված առանձնահատկության կապակցությամբ հայտնում է այն ուշագրավ միտքը, որ հայերենում քերականական սեռի տարբերակմամբ գոյականի համար համապատասխան հոդի կիրառությունը բոլորովին էլ նշանակություն չունի. «Իսկ մեֆ չառնեմֆ փոյթ, և դիւրին է մեզ ասել՝ զնոյնն՝ ով Տրդատիոս, ով Սմբատ»[117]: Այս քաղվածքից հետևում է, որ Վարդան Արևելցին, այնուամենայնիվ, ըմբռնել է, որ հունարենը, համաձայն գոյական անունների սեռային հատկանշի (իմա՝ վերջավորություններից մակաբերվող քերականական սեռի), ունեցել է նաև իրարից տարբերակված սեռի հոդեր. բայց հայերենի համար, ինչպես նշում է ի հեճուկս Մագիստրոսի, նշանակություն չունի՝ ոս վերջավորությամբ է գոյական անունը (իբրև արականի ցուցիչ՝ Տրդատիոս), թե առանց վերջավորության (օր. Սմբատ), միևնույն «հոդն» (ով) է դրվում: Ի դեպ ասենք, որ ոս վերջավորությամբ բառերը հայերենի համար անհարազատ՝ արհեստական ձևեր են, և այստեղ Վարդան Արևելցու կողմից հորինված է Տրդատիոս ձևը՝ պարզապես հունարենի համաձայն տվյալ երևույթը բացատրելու նպատակով:

Իբրև իգական սեռ ցույց տվող առաջադիր հոդ հայերենի համար Մագիստրոսն[118] է արհեստականորեն ո մասնիկը ներկայացրել քերականական իր մեկնության մեջ, որի հետևողությամբ և կրկնում է Վարդան Արևելցին: Խճճումը առավել քան ակնհայտ է, երբ իբրև առաջադիր և

---

115 Սույն աշխատությունը, էջ 132:

116 Նույն տեղում: Իրականում, սակայն, ոչ թե օմեգան (ὠ) է հոդը արականի համար, այլ օմիգրոն (ὀ):

117 Տե՛ս Ն. Ադոնց, նշված աշխատ., էջ 246—247:

118 Տե՛ս նույն տեղում, էջ 246: Նշենք, որ «ո» հոդի վերագրումը «իգական սեռի» հատուկ անուններին Վարդան Արևելցու հնարանքն է. մինչդեռ Մագիստրոսը՝ «ո» և «ով» հոդերը հավասարապես վերագրում է «արական սեռի» հատուկ անուններին, օրինակ՝ ո՛ Կոստանդիանոս, ո՛ Գրիգորիոս, ինչպես և ո՛վ Գրիգոր, ո՛վ Գէորգ (նույն տեղում, էջ 246):

իգականի համար «հատուկ» ո «ճողին» զուգադրվում է նաև «ոr» հարաբերականը «հոգի» իմաստով. և քանի որ նրա կազմության երկրորդ գիրը (–r) դիրքով ստորադասվում է «ո»-ին, այդ պատճառով այն կոչվում է, ի տարբերություն «նախադասական» ո-ին, «ստորադասական»։ Բայց տվյալ դեպքում անգիտացվում է, որ դրանք խոսքի մասային տարբեր պատկանելություն ունեն. «Երբ միաւոր է՝ ո նախադասական է, երբ ոr է՝ ստորադասական. զի ոr երկու գիր է, և մէկն ի ստորև է դասեալ. և իգական կարեմք ասել՝ ո՛ Մանի, ո՛ Նունի, զի ո ասելն փաղաքշական է. և մանկական է՝ տղայական»[119]։ Այս արհեստական ձևերն ու դրանցով կատարված փաստարկումները հայ քերական մեկնիչների կողմից պարզապես արդյունք են այն բանի, որ «մի կերպ» մեկնաբանեն Դիոնիսիոս Թրակացու համապատասխան ասույթները՝ երբեմն մոռանալով, որ Թրակացին իր քերականությունը կազմելիս՝ միայն ու միայն նկատի է ունեցել հունարենը, հետևաբար՝ այն, ինչ բնորոշ և առանձնահատուկ է հունարենին, կարող է այլ լեզվի համար բնորոշ չլինել՝ այդ կարգի քերականական առանձնահատկություն չունենալու պատճառով։ Բայց այնքանով, որքանով մեր քերական մեկնիչների համար գերագույն նախանձախնդրություն է եղել ամեն կերպ մեկնաբանել Թրակացուն և, ընդսմին, որքան սպառիչ մանրամասներով՝ այնքան հմուտ քերական է համարվել մեկնիչը, ապա այդ դեպքում միայն հասկանալի է դառնում նման արհեստական ձևեր հորինելու սևեռուն միտումը մեր քերական մեկնիչներից յուրաքանչյուրի մոտ[120]։ Բայց Վարդան Արևելցու կապակցությամբ կարևոր է նշել, որ նա ավանդական ըմբռնումներին տուրք տալով հանդերձ, միաժամանակ նման արհեստական ձևերի նկատմամբ իր որոշակի վերաբերմունքն է արտահայտել՝ ելնելով հայերենի լեզվական իրողություններից. իսկ նման մոտեցումը, անշուշտ, չափազանց շահեկան արդյունքներ է տալիս՝ հանգեցնելով քերականագիտական առավել ճշգրիտ ըմբռնումների, ուստի և՝ առաջ է մղում հայ քերականագիտական միտքը։ Մասնավորելով մեր խոսքը քննվող հարցի շուրջը, ասենք, որ Վարդան Արևելցին, նշելով հոդերի՝ բառավերջում հանդես գալու իրողությունը հայերենին առանձնահատուկ լինելը, կատարում է մի ընդհանրացում, որն իր խորքում, լեզվաբանական տեսության առումով, չափազանց հատկանշական է. հոդերի կիրառական սահմանափակումը միայն բառավերջում՝ Վարդան Արևելցին բացատրում է, որքան էլ զարմանալի թվա այսօր, հայերենի զարգացածության հանգամանքով. «... և այս յառատութենէ լեզուիս է, զի չկարաւտանամք բռնադատել ի նախադասականն և յառաջն դնել զյաւդն,

---

[119] Նույն աշխատությունը, էջ 132։

[120] Իրականությանը բոլորովին անհարիր պնդում է արվեստագիտության պրոֆեսոր Արշակ Ադամյանի կարծիքն այն մասին, որ Թրակացու աշխատության մեկնաբանումը, իբր, հայ քերականների խնդիրը չի եղել. նա այս առնչությամբ հանիրավի «քննադատելով» Ն. Ադոնցին, գրում է. «... վճռապես կարելի է պնդել, որ ինքնին հենց այս աշխատությունը (իմա՝ Թրակացու երկը—Լ. Խ.), դրա մեկնաբանման խնդիրը ոչ մի չափով չի զբաղեցրել հայ քերականներին...» (տե՛ս նրա «Эстетические воззрения средневековой Армении» աշխատությունը, Երևան, 1955, էջ 141—142. ընդգծումները մերն են—Լ. Խ.)։ Հարց է ծագում՝ ապա ի՞նչն են «մեկնաբանել» հայ քերականները։ Ըստ Ա. Ադամյանի՝ հայոց լեզուն...։ Սա առնվազն թյուրիմացություն է։ Իրականում՝ միջնադարի հայ քերականների երկերը բացառապես ուղղված են Թրակացու դրույթների ու ասույթների մեկնաբանմանը՝ քերականական իրակությունների ու լեզվանմուշների «հայացման» որոշակի ճիգերով, ինչպես և մանավանդ՝ բացատրությունների ու ընդհանրացումների մեջ տեսական մտքի ինքնուրույնության դրսևորումով։

այլ միշտ և յաճախ ի վճարն»[121]: Նա այս միտքը առավել հստակությամբ և ամբողջական շարադրում է հետևյալ կերպ. «Ասացաւ, թէ հայք չունին զնախադասականն յաճախ յաւդ՝ որպէս յոյնք և իմայելացիք. և չէ՛ պակասութիւն, զի որ չգիտէ ասել երկոտասան՝ ի՞նչ պակաս է ի յասելն տասներկու»[122]: Այս քաղվածքի ընդգծված տողերից ինքնըստինքյան բխում է ուշագրավ մի ընդհանրացում ևս. Վարդան Արևելցին տվյալ դեպքում օգտագործելով Մագիստրոսի առաջադրած լեզվանմուշը[123], յուրովի իր փաստարկմամբ պաշտպանում է լեզվի անընդհատ զարգացման տեսությունը, նրա անկասելի ընթացքը փոփոխություններով դեպի որակական նոր դրությունները՝ այն առողջ հայացքն ունենալով, որ մտածողության դրսևորման համար լեզվի ձևաբանական քարացած սիստեմ գոյություն չունի. այն հարափոփոխ է: Սա չափազանց կարևոր հարցադրում է, որը, պետք է ասել, միաժամանակ տեսական հիմնավորումն է արդեն իսկ ծնունդ առած աշխարհաբար միջին հայերենի[124]:

«Հոդի» տեսության առանձին հարցերում, սակայն, Վարդան Արևելցին կրկնում է իր նախորդների և՛ դրական նվաճումները, և՛ սխալը: Ընդունելով Դավթի ճիշտ դիտողությունն այն մասին, որ իսկական հոդերը հայերենում բառավերջին են կցվում[125], նա գրում է. «Զի մերս ի վախճանին գայ նշանաւոր յաւդ. իբր թէ՝ ձին և ձիդ և ձիս...»[126] Սա արդեն հոդի ճիշտ ըմբռնումն է, որը և ընդունվում է հետագայում որպես հոդի գիտական ճանաչում: Բայց Դավթին լրացնում է Վարդան Արևելցին մի կարևոր հարցադրմամբ. այդ այն է, որ ն հոդը մշտակայության («յարակայ») պայմանավորվածությամբ ընդհանրության իմաստ է արտահայտում. «... Եւ գիտեմք անդէն զնշանակեալն նուին կու յարակայանայ յաւդս»[127]: Սակայն Վարդան Արևելցին չի կարողանում հաղթահարել Մագիստրոսի շփոթ պատկերացումը բառավերջի ն հոդի փաստական կիրառության մասին. նա ևս բառածանցի բաղադրիչ ն հնչյունը, Մագիստրոսի հետևողությամբ[128], մի այլ դեպքում դիտում է որպես «հոլովական հոդ». «Այլ մեք զյաւդն առաւել յաւարտն ունիմք քան ի սկիզբն,— գրում է Վարդան Արևելցին,—որպէս՝ երկնային, երկրային, ծովային, ցամաքային,— այսպիսիքս հոլովական յաւդք են...»[129]:

ԴԵՐԱՆՈՒՆԸ միջնադարյան մեր քերական մեկնիչների կողմից ըմբռնվել է իբրև այն խոսքի մասը, որն իր բնույթով ոչ թե «ճշմարիտ» անուն է, այլ ինքն՝ տարբերակված որոշակի առարկա կամ վերացություն, հատկանիշ և

121 Սույն աշխատությունը, էջ 132:

122 Նույն տեղում, էջ 133:

123 Տե՛ս Ն. Ադոնց, նշված աշխատ., էջ 247—248:

124 Տե՛ս Ս. Ղազարյան, «Միջին հայերեն», գիրք Ա, Երևան, 1960, էջ 86: Բայց և անընդունելի ենք համարում պրոֆ. Ս. Ղազարյանի այն պնդումը, ըստ որի Վարդան Արևելցու «Մեկնութիւն քերականի» երկի լեզուն, իբր, միջին հայերենով գրված աշխարհաբար է՝ ելնելով սոսկ այն իրողությունից, որ նրանում առանձին դեպքերում արտացոլում են գտել «Կը» և «Ում» ձյուղերի լեզվական իրակությունները (տե՛ս նույն տեղում, էջ 122): Մինչդեռ իրականությունն այն է, որ այն լեզվամտածողությամբ ժողովրդական լինելով հանդերձ, գերազանցապես գրաբարյան է՝ լեզվական իրակությունների իր տեսակարար կշռով:

125 Ն. Ադոնց, նշված աշխատ., էջ 115:

126 Սույն աշխատությունը, էջ 133:

127 Նույն տեղում, էջ 134:

128 Տե՛ս Ն. Ադոնց, նշված աշխատ., էջ 246:

129 Սույն աշխատությունը, էջ 132:

այլն ցույց տվող բառ, այլ դրանց փոխարինող խոսքի մաս՝ առանց տարբերակման, ուստի և հատկացվել է նրան «դերանուն» տերմինը. «զմէկն (իմա՝ դերանվան քերականական իմաստներից մեկը — Լ. Խ.) ասաց փոխանակ ճշմարիտ անուանն, այսինքն դերանուն»[130]։ Այս նույն միտքը Վարդան Արևելցին առավել որոշակիությամբ մեկնաբանում է հետևյալ բնորոշ համեմատությամբ. ճիշտ այնպես, ինչպես «մարդ» անունը վերագրվում է ամբողջ տեսակին՝ առանց տարբերակված որոշակիության, դերանունը ևս վերագրվում է ամեն ինչի՝ թե՛ եզակի, հոգնակի և թե՛ մոտավոր ու հեռավոր գոյացություններին ու երևույթներին. «Զոր աւրինակ, որ մարդ անունն ի վերայ բոլոր տեսակին ասուի, նոյնպէս և դերանունս ի վերայ ամենայնի երթայ՝ եզականաց և երկուրականաց և յոքնականաց, մաւտաւորաց և հեռաւորաց, զի երբեմն զհեռաւորն յիշեմք ասելով, թէ նա ասա էր, կարաւղ էր կատարել զայս իրքս, [բայց] չասաց, թէ ո՞վ»[131]։ Ինչպես տեսնում ենք, սա դերանվան միանգամայն ճիշտ ըմբռնում է՝ ընդգրկման իր համապարփակությամբ։ Բանն այն է, որ դերանունը ոչ թե անվանում է ընդհանրապես առարկա կամ հատկանիշ, այլ փոխարինում է որևէ խոսքի մաս, մինչև անգամ նախադասություն՝ առանց մասնավորման կամ տարբերակման։— Սա հենց դերանվան, որպես խոսքի մասի, էությունը բնորոշող ընդհանրացում է։

Այն հանգամանքը, որ դերանունը չի կարող իրենով տարբերակված որոշակի առարկա կամ հատկանիշ (ինչպես և առհասարակ որևէ խոսքի մաս) նշել, այլ ընդհանուր կերպով է նշում ամեն ինչ, այդ պատճառով էլ միջնադարի մեր քերական մեկնիչների կողմից միաժամանակ «թերանուն» տերմինն է հատկացվել այդ խոսքի մասին. «Եւ զդերանունն ասաց, զի չկարաց դերանունն զճշմարիտ անունն յայտնել, վասն որոյ թերանուն ասաց, այսինքն՝ թերի»[132]։ Վարդան Արևելցին այս նույն տեսակետը հիմնավորում է հետևյալ կերպ. դերանունը թեև ընդհանրություն ունի անվան հետ, բայց տարբերվում է նրանից մի էական կողմով. դերանունը իր նշածի բնույթը երբեք չի հաղորդում՝ ինչպես անունը, այդ պատճառով էլ «թերանուն» է կոչվում, այսինքն՝ թերի՝ անվան հարաբերությամբ. «լուկ ասաց, թէ նա, ու այն դերանուն է։ Եւ այս անուանն նմանութիւն է և յիրաւի ասի թերանուն, զի զգոյութիւն բնութեանն ոչ ցուցանէ ասելն թէ՝ նոցա, նոքա, նա, իւոյ, քոյոյ, նորայ»[133]։ Բայց որովհետև դերանունը օժտված է ամենածավալուն քերականական կարգը՝ «անունը» իր քերականական սեռի երեք տեսակներով փոխարինելու հատկանիշով (նկատի է առնվում համապատասխան լեզուները, որոնցում անունը միայն քերականական սեռերով է հանդես գալիս), այդ պատճառով էլ միջնադարի մեր քերական մեկնիչները բնութագրել են այն մի երրորդ տերմինով՝ իբրև «փոխանուն»։ «Եւ զփոխանունն ասաց, վասն զի ի վերայ հասարակին առեալ լինի արականին, իգականին և չէզոքին՝ փոխանակաւ ի դէպ տեղւոջ»[134]։

Դերանունի վերլուծության սկզբունքը միջնադարի հայ քերական մեկնիչների մոտ նույնն է, ինչ մյուս խոսքի մասերինը. նախ՝ փորձ է արվում դերանունների կազմությունները պարզելու՝ ըստ բառագիտության այն «մեթոդի», որ ընդհանուր կիրառություն է գտել քերականական բոլոր մեկնություններում.

---

130 Սույն աշխատությունը, էջ 134։

131 Նույն տեղում, էջ 136։

132 Նույն տեղում, էջ 134.

133 Նույն տեղում, էջ 136։

134 Նույն տեղում, էջ 134։

ա) «նախագաղափար» համարվում են տվյալ խոսքի մասի պարզ կազմությունները. այս դեպքում՝ «նախագաղափարն առաջին աւրինակն է, որ յառաջն ի մենէ սկսանինք՝ ես, դու, նա»[135]։ բ) «Ածանցացն» դիտվում են այս կամ այն խոսքի մասի բառածանցված կազմությունները. այս դեպքում՝ ստացական դերանունները մեխանիկորեն համարվում են բառածանցումներ, որոնք, սակայն, ժամանակակից ըմբռնմամբ՝ հեռավոր առնչություն անգամ չունեն, ստուգաբանորեն, բառածանցման հետ. դրանք պարզապես անձնական դերանվան սեռական հիմքով հոլովվող ստացական դերանուններ են. «Եւ ածանցացն՝ որ ի քէն ի քո ստացուածն անցանէ, և յիսնէ՝ յիմն, իմ բանն, քո բանն, իմ այգին կամ իմ ձին»[136]։

Վերոբերյալ դերանվան էությունը մեկնող տեսական ճիշտ հարցադրումների հետ միասին Վարդան Արևելցու մոտ կան նաև սահմանափակ աշխարհայացքի ընդհանուր ոգուց բխող քարացած նախապաշարումներ, որոնք, անտարակույս, խանգարում ու կաշկանդում են գիտական հստակատեսությանը՝ երևույթների էության մեջ թափանցելու և լեզվական իրակությունների հետախուզման անսայթաք հետևողականությամբ օրինաչափություններ բացահայտելու իմաստով։ Ըստ այսմ, դիցուք ներկա դեպքում, վկայակոչվում է նաև այն մարդկանց տեսակետը, որոնք պնդում են, թե դերանունները «մշտական» են, ուստի և՝ նախնական, քան հատուկ անուններով նշված անձնավորությունները, որոնց գոյատևումը ժամանակավոր է, անցողիկ. այստեղից էլ հետևցվում է, որ դերանունները «տիրական՝ ճշմարիտ» են՝ ըստ քրիստոնեական վարդապետության այն ընդհանուր դրույթի, թե իբր «ստոյգ» կամ «ճըշմարիտ» անունը ժամանակից, տարածությունից դուրս է և «անդէմ». իսկ իբրև այդպիսին ըմբռնվում է միայն գերբնականը՝ «աստվածը»։ Նման անհարիր պնդումը արվում է նախորդ լեզվաբանական-քերականագիտական միանգամայն ճիշտ դիտողություններին տրամագծորեն հակասելու գնով։ Ասենք, սակայն, տեսական այս հարցադրումը Վարդան Արևելցին վերցրել է Ստեփանոս Սյունեցուց[137]։ «Բայց և տիրանուն ասի դերանունս,— գրում է Վարդան Արևելցին,— այսինքն՝ ճշմարիտ անուն, զի ասեն՝ այս հին է և մըշտնջենաւոր՝ ես, դու, նա, նորա, նոցա, նոfա, քան զՄովսէս և զԱհարովն և զՊաւղոս և զՊետրոս կամ զՊղատոն և զՍոկրատ, զի սոքա յետոյ եղան և ոչ կան և մնան յաւիտեան. և ստոյգ անունն անժամանակ, անդէմ և անտեղի է, որպէս դերանունս ցուցանէ, զի միշտ էր և ոչ անկանի ի յանէութեան, զի ասելն՝ ես, դու, նա, նոfա, նոցա՝ գոյութիւնք են, և ո՛չ սոսկ անուն, որ այսաւր ասի և վաղիւ ոչ վախճանի, զի դրականք են, և ո՛չ՝ բնութեամբ»[138]։

Դերանուններն ըստ «տեսակների» բաժանելիս, մեկնողական քերականագիտությունը ելնում է այն բանից, որ դրանք լինում են կազմության առումով՝ ա) պարզ («նախագաղափար») և բ) «ածանցական»՝ իրոք երկընույթ ստացական («ստացականք երկդիմիք»)։ Պարզ դերանուններն են՝ ես, դու, նա: Ածանցական երկընույթ ստացականներն են՝ 1) սեռականով իբրև ուղղական կիրառվող ստացական դերանունները, ինչպես՝ «իմ ստացուածն», «իմ այգին»։ 2) Պատկանելություն ցույց տվող սեռականով դրված գոյականի կամ

135 Սույն աշխատությունը, էջ 135։

136 Նույն տեղում։

137 Ն. Ադոնց, նշված աշխատ., էջ 215։

138 Սույն աշխատությունը, էջ 136։

փոխանում գոյականի հետ դրված ստացական դերանունները, ինչպես՝ «Իմ այգւոյն բերն, իմ ստացուածոցն անն»։

Թրակացու հայ թարգմանիչը հայերենի լեզվական իրողությունների հաջող նմուշներով հիմնավորել է հեղինակի դիտողությունն այն մասին, որ լեզվում (իհարկե՝ հունարենում) դերանունների մի մասը կարող են հանդես գալ իբրև հոդավորներ («բաղյաւդք»), մյուսները՝ առանց հոդերի («անբաղյաւդք»)։ Թրակացու հայ թարգմանիչը գրաբարի դերանուններից նկատի է ունեցել ստացականները, որոնք կարող են հանդես գալ և՛ հոդով, և՛ առանց հոդի, որով և «հայացվել» է Թրակացու այդ դրույթը։ Բայց Վարդան Արևելցին իր մեկնության մեջ դիոնիսիոսյան հարցադրումն ընկալում է որպես առհասարակ բառավերջում հոդերի կիրառության խնդիր և, համերաշխվելով Դավթի տեսակետի հետ[139], գտնում է, որ նշված իրողությունը դերանունների կապակցությամբ հիշատակելը պարզապես կրկնություն է, քանի որ նախապես իր տեղում՝ հոդին վերաբերող գլխում այդ հարցն արդեն արծարծվել է. «Ասեն, թէ սխալանք է այս արուեստաւորիս զայս աստ յիշելս, զի յիւրում տեղւոջն ասացեալ է վասն յաւդից, զի բաղյաւդ է՝ որ մի յաւդ ունի, որպէս Սմբատն, զի գիր մի յաւդեցաւ յանունն. իսկ անբաղյաւդ է՝ որ առանց յաւդի ասի՝ Սմբատ, և չունի յաւդ ի յաւարտն՝ որպէս յառաջն»[140]։ Սակայն պետք է արձանագրել, որ արված դիտողությունը, այնուամենայնիվ, չի արդարացվում. բանն այն է, որ դիոնիսիոսյան հարցադրման մեջ խոսքը վերաբերում է դերանունների կիրառական բնույթից բխող առանձնահատկությանը, հետևաբար և դերանունների ամբողջական նկարագրման առթիվ անհրաժեշտաբար անդրադառնալու կարիք էր զգացվել նաև դերանունների հոդ կրելու և չկրելու դեպքերին։

ՆԱԽԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ միջնադարի մեր մեկնիչների քերականական տեսության սիստեմում ըմբռնվել է բավականին ընդհանուր ձևով՝ որպես նախածանցներ (հիմնականում), վերջածանցներ և կապեր։ Նախադասությունները, չնայած դրանց բառակազմական և խոսքի մասային անհարիր զուգակցմամբ ընկալվելուն, միանգամայն ճիշտ կերպով դիտվում են որպես «սպասավոր» բառեր և բառակազմական միջոցներ, այլ կերպ ասած՝ նրանք անկախ գործածություն չունեն, ինչպես նյութական իմաստ արտահայտող խոսքի մասերը։ Եվ քանի որ «նախադրություն» ասելով առաջին հերթին հասկացել են իբրև «առաջը կամ սկզբում դրվող» բառ կամ բառակազմական ձևույթ, ուստի և հակասություն են տեսել, մի կողմից՝ այդ տերմինի արտահայտած բառական իմաստի, մյուս կողմից՝ քերականական մեկնությունների սիստեմում նրան հատկացված հետադաս տեղի միջև. «Նախադրութեանս անուն և տեղի հակառակ են միմեանց, զի թէ նախդիր է՝ նա յետոյ է՞ր է դրած. և եթէ յետոյ եդաւ՝ նախադրութիւն է՞ր կոչի. այլ թէ սխալանք էին՝ ո՛չ վարէին այսու մինչև ցայսաւր»[141]։

Գիտական այս հարցադրմանը, սակայն, տրվում է աշխարհայացքայինգաղափարախոսական մեկնաբանություն. ըստ այսմ՝ ծառան էլ կարող է թագավորի առջևից գնալ, բայց դա չի նշանակում, թե պատվի առումով ծառան բարձր է քան թագավորը։ Ըստ ավատական աշխարհայացքի՝ դա բացառված

[139] Ն. Ադոնց, նշված աշխատ., էջ 117։

[140] Նույն աշխատությունը, էջ 138։

[141] Նույն տեղում, էջ 139։

է։ Այդպես և նախադրությունը մյուս խոսքի մասերի սկզբից դրվելով նախամեծար չի դառնում, այլ հանդես է գալիս իբրև «սպասարկու» բառ կամ բառակազմական ձևույթ. «Եւ հաւաստի՝ այսպէ՛ս. նախդիր ասի այնր աղագաւ, զի նախ եղեալ լինի և յառաջ քան զանուն և զբայ և յամենայն տեղիս՝ ո՛չ իբրև զպատուաւոր, այլ իբրև զսպասաւոր, զի վասն այսորիկ յետոյ եդաւ տեղեաւ, զի սպասաւոր է»[142]: Ընդսմին՝ «նախադրությունները» մեկնաբանվել են միջնադարի քերականների կողմից որպես բառին իմաստային նրբերանգներ և «գեղեցկություն» հաղորդող լեզվական իրողություններ, և Վարդան Արևելցին նման ըմբռնումը միանգամայն ճիշտ է համարում. «Եւ իբրև զկարապետ նախադասեալ լինի յամենայն մասունս բանի, որ չէ պատուական, քան զթագաւոր, և յաղագս զարդու և գեղեցկութեան իմացեալ եղև նախադրութիւնս, և բարւոք իմացեալ եղև»[143]: Այս բնութագրումը Վարդան Արևելցին սպառիչ է համարում նախադրությունների համար, քանի որ դրանցով արտահայտված բովանդակության և անվանումի միջև կատարյալ համապատասխանություն է առկա. «Եւ բարւոք իմացեալ եղև. զի իրք՝ որ սահմանաւ բաժանի, պարտ է, որ անուամբ զանազանի՝ որպէս նախդիրս, զի սահմանաւ և անուամբ կատարեցաւ յայլոցն»[144]։

Արձանագրենք, սակայն, որ Վարդան Արևելցին «նախադրության» վերաբերյալ տեսական ընդհանուր հարցադրումներում որոշակի ինքնուրույնություն հանդես չի բերում և լիովին օգտվում է ինչպես Դավթից[145], այնպես և Մովսես Քերթողից[146]։

ՄԱԿԲԱՅԸ միջնադարի քերականագիտական ըմբռնումների համակարգում իր ձևաբանական հիմնական առանձնահատկությամբ ճիշտ է որոշվել. այն դիտվել է որպես չթեքվող խոսքի մաս («անխաղաց»), որը դրվում է բայի վրա, այստեղից և՝ «մակբայ» տերմինի առաջացումը։ Բայց մակբայը միաժամանակ ընկալվել է տվյալ հասկացության ոլորտային այնպիսի համապարփակությամբ, որ դուռ է բացում նաև ճապաղության և անհարիրություններին։ Այդ իսկ պատճառով «մակբայի» տեսության մեկնաբանումը միջնադարի հայ քերականների կողմից խոցելի կողմեր շատ ունի։ Բայց այն, որ մակբայի դիոնիսիոսյան սաույթի մեկնաբանումն ու հիմնավորումը հայոց լեզվի իրողություններով ինքնին մտավոր վիթխարի աշխատանքի արդյունք է գիտական մտածողության զարգացման տվյալ ժամանակաշրջանում՝ կասկածից վեր է։ Պատմական մոտեցմամբ քննելով և գնահատելով ինչպես այս, այնպես և քերականական մյուս կարգերը, տեսնում ենք, որ, այնուամենայնիվ դրական շատ բան է արված քերականական մեկնություններում։ Հենց դիոնիսիոսյան այն ըմբռնումը, որ «մակբայ է մասն բանի անխաղաց», տվյալ քերականական կարգի ձևաբանական կողմի միանգամայն ճիշտ բնութագրում է ո՛չ միայն հունարենի, ա՛յլև հայերենի համար։ Բայց մակբայի գրաբարյան տեսակների տարորոշման ու դասդասման առթիվ բացահայտվում է հայ քերականական մեկնիչների դրական այն կարևոր աշխատանքը, որը որոնումների

---

142 Սույն աշխատությունը, էջ 139։

143 Նույն տեղում։

144 Նույն տեղում։

145 Ն. Ադոնց, նշված աշխատ., էջ 117—118։

146 Տե՛ս նույն տեղում, էջ 276։

և մտքի մեծ լրումի արդյունք է անշուշտ։ Մակբայի տեսակների վերաբերյալ արված բազմաթիվ հավաստի դիտարկումների կողքին, բնականաբար և անխուսափելիորեն, առկա են նաև սխալ հարցադրումներ ու մեկնաբանումներ։ Հենց այն հանգամանքը, որ միջնադարյան հայ քերականագիտությունը սևեռուն ուշադրություն է պահպանել քերականական այս կարգի առթիվ առաջադրված լեզվական ամենաբազմազան իրողությունների նկատմամբ՝ նույնպես գնահատելի է՝ հեռամետ արդյունքի արգասավորության առումով։ Վարդան Արևելցու սույն երկի «Մակբային» նվիրված գլխում հարցադրումների արծարծումը ընկալելի դարձնելու նպատակով հարկադրված ենք կանգ առնել դրանց գիտականորեն ինչպես ճիշտ, այնպես և ոչ-ճիշտ՝ խոցելի կողմերի վրա, պարզաբանելով միաժամանակ, թե ինչո՛ւ այդ այդպես է։

Դիցուք՝ այն հարցադրումը, որ մակբայը շարադասական իր կիրառմամբ կարող է դրվել ինչպես բայից առաջ, այնպես և բայից հետո՝ քերականագիտական ճիշտ դիտում է, բայց դրան տրված բացատրությունը լեզվական նմուշների առադրությամբ՝ միանգամայն խոցելի և անհավաստի է. «Մակբայն «կրկնաբայ» ասի կամ «վերնաբայ», որպէս թէ ասես՝ զայս շինեմ և կամ շինեմ զայս. «զայսն» բայ է, և «շինեմն»՝ մակբայ։ Թէ ի ստորև դնես զբայն կամ ի վերջէ՝ մակբայ կոչի և անսխալ զբանն յայտնէ»[147]։ Մակբայի նման մեկնաբանությունը անշուշտ շփոթության արդյունք պետք է համարել։ Ասել, թե «շինեմ» բայաձևը միջնադարի քերական մեկնիչները չեն ըմբռնել իբրև դիմավոր բայ, սահմանական եղանակի ներկա անկատարի եզակի 1-ին դեմք՝ ճիշտ չէր լինի, որովհետև բազմիցս նրանք անդրադարձել են դիմավոր բայաձևերին և համապատասխանաբար բնութագրել են դրանք։ Հետևաբար՝ «շինեմ» բայաձևը իբրև մակբայի նմուշ ներկայացնելը պարզապես անհաջող լեզվական իրողության ընտրության արդյունք է, ուստի և՝ վրիպում։ Այլուր, ինչպես կտեսնենք, նրանք մակբայի բնույթը ճիշտ հասկացած լինելով գրաբարյան նաև շատ հաջող նմուշներ են առաջադրել։ Ոչ էլ «այս» ցուցական դերանունը կարող է «բայ» լինել, ինչպես վերը բերված քաղվածքում ասվում է, ուստի և սա ևս վրիպում պետք է համարել։ Ի դեպ՝ Վարդան Արևելցին այս մեկնությունը բերելիս ակնհայտորեն օգտվել է ինչպես Դավթից[148], այնպես և Անանուն մեկնիչից[149]։

Վարդան Արևելցին, սակայն, համեմատաբար ինքնուրույն բացատրություն ունի «քերթության» մակբայների մասին. դրանք մակբայի այն տեսակն են, որոնք գործողության ձևն են ցույց տալիս, ուստի և դրանք ձևի մակբայներ են։ Բայց ինչո՞ւ «քերթութեան» մակբայներ են կոչվել դրանք և ի՞նչ աղերսակցություն ունեն չափածոյի («քերթութեան») հետ։ Այս հարցերին նախորդ քերական մեկնիչների համեմատությամբ միայն Վարդան Արևելցին է պատասխանում. «քերթողաբար» տերմինը հատկացվել է մակբայի տվյալ տեսակին այն պատճառով, որ դրանց կիրառությունը խոսքի մեջ «պաճուճազարդ» է, բանաստեղծական լեզվին յուրահատուկ՝ ի տարբերություն «գեղջկապէս» կիրառություն ունեցող մակբայների կամ բառի. «Յորժամ քերթողաբար խաւսիս՝ պաճուճազարդ, և ոչ՝ գեղջկապէս»,—ասում է Վարդան Արևելցին։ «Քերթողական» մակբայներ են համարվում՝ բռնցի, մուրցացի, ծղացի, ափացի, ողկուզաւրէն, տարմաբար և սրանց նման բառերը։ Ըստ միջնադար-

[147] Սույն աշխատությունը, էջ 140—141։

[148] Տե՛ս Ն. Ադոնց, նշված աշխատ., էջ 119։

[149] Տե՛ս նույն տեղում, էջ 152։

յան մեր քերականների՝ նշված մակբայները իրենց բարեհնչունությամբ և վանկային հատումներով շատ տաղաչափական են։ Այս առթիվ Վարդան Արևելցին հետևյալ ուշագրավ մեկնությունն է տալիս. «… Ասեն, թէ քերթողէ աշակերտ ոք կատարեալ ուսեալ՝ գնաց ի դրախտն միրգ բերել իւր վարդապետին։ Եւ առեալ ծեծեցին զնա և արիւնաշաղախ թողին. և տեսեալ վարդապետին՝ հարցանէր զպատճառն։ Եւ նա քերթողաբէս քերածու բանիւ և չափածու վանգիւք պատմեաց զեղեալ գործն, թէ ի՛նչ ազգ ծեծեցին և ի՛նչ նիւթով։ Ասաց՝ բռնցի, մուրցացի—«մատանցն կոճերովն», ծղացի՝ «բազկացն ծղաւքն և արմնկամբքն», աքացի՝ «ոտաւքն», ողկուզաւրէն՝ «զերդ զխաղող կոխեցին». տարմաբար՝ «ի վերայ դիմեցին բազմութիւնքն առհասարակ»[150]։

Սակայն բնագրագիտության պահանջով պետք է ճշտում մտցնել «քերթութիւն» տերմինի կիրառման նկատմամբ։ Խրականում՝ դեռևս Թրակացու Քերականության թարգմանության ժամանակ թույլ է տրվել շփոթություն։ Այսպես, երրորդ մակբայատեսակը Թրակացին համարում է ποιότης կոչվող բառախումբը, որը հայ թարգմանիչը «քերդութիւն» տերմինով է ներկայացրել, որով և մթագնվել է Թրակացու հարցադրումը։ Հին հունարենում ποιότης բառը նշանակում է «որակային», «բնույթային», իսկ առավել մերձ ընկալմամբ՝ «ձևային»։ Հետևաբար՝ նշված մակբայատեսակը պետք է ըմբռնել և թարգմանել իբրև ձևի մակբայներ, և ոչ թե՝ «քերդութեան» մակբայներ, որն անիմաստ է տվյալ դեպքում։ Հայ թարգմանիչը, ըստ երևույթին, շփոթել է բնագրի ποιότης -ը հին հունարենի ποίησις բառի հետ, որն իր բառիմաստով համընկնում է հյ. «քերդութեան»-ը՝ «բանաստեղծությանը»։ Քննենք նաև բնագիրն ու թարգմանությունը ամբողջությամբ՝ ասվածի հավաստիության մեջ համոզվելու համար։ Այսպես, Թրակացին գրում է. „Τὰ δὲ ποιότητος, οἷον πύξ, λάξ, βοτρυδόν, ἀγεληδόν“. սրա հայերեն թարգմանությունը տրված է հետևյալ կերպ. «Եւ քերթութեանն, որպիսի մուրցացի, ծղացի, աքացի, ողկուզաւրէն, տարմաբար»[151]։ Համեմատությունից պարզվում է, որ լեզվանմուշները երկու ընթերցումներում էլ նույնական են. միայն հայերենը հավելադիր ունի «ծղացի» մակբայը, որը, հավանաբար, հետագա ընդօրինակումներում է ներմուծված։ Սակայն թվարկված լեզվանմուշները, ամբողջությամբ վերցրած, հաստատում են, որ Թրակացին այստեղ նկատի է ունեցել ձևի մակբայները։ Հետևաբար հայ թարգմանչի վրիպումը «քերդութեան» տերմինի կիրառմամբ՝ առավել քան ակնբախ է։ Մի անգամ մուտք գործելով այս տերմինը նշված ընթերցման հետ, այնուհետև հանդիպում է միջնադարի մեր բոլոր քերականական մեկնություններում անխտիր։

ՇԱՂԿԱՊԸ, իբրև խոսքի մաս, ճիշտ կերպով դիտվել է, Թրակացու հետևողությամբ, որպես նյութական իմաստից զուրկ բառ՝ նշանակությամբ և դերով որպես «զօդիչ», «կապ». ըստ որում շաղկապը որոշակի կարգավորությամբ կամ համաձայնությամբ տարբեր մտածությունները, որ արտահայտվում են առանձին բառերով ու նախադասություններով, իրար է միացնում կամ շարահարում. «Շաղկապ է, որ կապէ զտրամախոհութիւնն ըճով»[152]։ Վարդան Արևելցին, առավել հստակ ձևակերպելով Թրակացու այս նույն միտքը, տալիս է հետևյալ ճիշտ բնորոշումը շաղկապի շարահյուսական գործառույթի

[150] Նույն աշխատությունը, էջ 142։

[151] Ն. Ադոնց, նշված աշխատ., էջ 31։

[152] Նույն աշխատությունը, էջ 149։

մասին. «Եւ «շաղկապ» ասի ի շաղղելոյ և միաւորելոյ և կապելոյ ի կարգի զբառն ընդ բառն և զմիտս ընդ միտս»[153]։ Կարևոր է նշել այս առթիվ, որ շաղկապի «կապական» դերը վերհանելիս, Վարդան Արևելցին ընդգծում է ոչ թե սոսկ նրա «կապական» գործառույթը միայն մտածության («տրամախոհութեան») հարաբերությամբ, այլ տրամաբանական համաձայնությամբ («կարգավորութեամբ») պայմանավորված նրա կապական գործառույթը բառերի և նախադասությունների միջև, այն է՝ խոսքի մեջ։ Իսկ նման բնութագրումը սկզբունքային նշանակություն ունի, որով շաղկապի շարահյուսական գործառույթը բացահայտվում է միանգամայն գիտական ճշգրտությամբ։

Միջնադարի քերականագիտական ըմբռնումների համաձայն, կարևոր է և այն հարցադրումը, թե տրամաբանական ինչպիսի՛ նկատառումից դրդված շաղկապի տեսությունը տրվում է խոսքի մասերի քննության վերջում։ Թվում է, թե նման հարցադրումը սխալատիկ է, բայց հենց որ խորամուխ ենք լինում միջնադարի մեր քերականների տված պատճառաբանությունների և հիմնավորումների մեջ, ապա տեսնում ենք, որ դրանք աղերսվում են լեզվի տեսության առանցքային դրույթների հետ. ըստ այսմ՝ քերական մեկնիչները ճիշտ կերպով դիտել են տալիս, որ եթե շաղկապի տեսությունը տրվում է խոսքի մասերի քննարկման վերջում, ապա պատճառն այն է, որ նա, զուրկ լինելով նյութական իմաստ արտահայտելուց, իր կապական դերով և իմաստով բնականաբար պետք է հաջորդի նյութական իմաստ արտահայտող բոլոր խոսքի մասերին. «Բարւոք դաս կալաւ շաղկապս ի յայսմ տեղւոջ, զի յառաջ՝ նիւթ, և ապա՝ կապ»,— գրում է Վարդան Արևելցին։ Նախ պետք է ընդհանուր պատկերացում տալ կապվող բառերի տեսակների (իմա՝ նյութական իմաստ արտահայտող խոսքի մասերի), ապա նոր կապող խոսքի (իմա՝ շաղկապի) վերաբերյալ, որպեսզի կապակցությունը լինի երկուստեք. «...Զի նախ այլևայլ իրք հաւաքել արժան է, և ապա՝ կապել։ Նախ՝ ամենայն մասունք բերականին, և ապա՝ շաղկապ, զի կապն միոյ իրի ոչ լինի և ոչ ասի»[154]: Նման ճիշտ հարցադրումից բխում է, որ միջնադարի մեր քերական մեկնիչները հստակ ըմբռնել են նյութական խոսքի մասերի և նյութական իմաստից զուրկ խոսքի մասերի հակադրությունը, որը, ինչպես հայտնի է, քերականագիտական առանցքային հարցադրումներից է։

Ըստ Վարդան Արևելցու մեկնության, «տրամախոհությունը» ոչ այլ ինչ է, եթե ոչ նախադասության բովանդակությունը. այլ կերպ ասած՝ հենց մտածությունն է, որի ընդարձակումը կամ ծավալումը հնարավոր է դառնում շաղկապի շնորհիվ: Այստեղից՝ հետևություն. շաղկապը, իր բնույթով, կարող է մտածությունը ծավալել կա՛մ սկզբից, կա՛մ վերջից. «Տրամախոհութիւնն իմաստքն և բանին միտքն է, զոր շաղկապն կա՛մ յառաջքն մեկնէ, կա՛մ ի վերջքն ոճով, իբր թէ ասես՝ «Գնամք ի Հռովմ ես և դու»,—և զմեկնութեանն փոխելումն յայտնէ, այսինքն՝ զբանն տարածանէ, որ մեկնութիւնն չթաքչի»[155]։

Բնութագրական է և այն, որ Վարդան Արևելցին, ի տարբերություն իր նախորդների, շաղկապը համարում է խոսքի կամ նախադասության «ոգին», որ «կենդանացնում» է խոսողությունը կամ գրավոր հաղորդումը՝ նրանց միավորների միջև տրամաբանական զոդում ստեղծելու իր գործառույթի շնորհիվ.

[153] Սույն աշխատությունը, էջ 150։

[154] Նույն տեղում, էջ 149։

[155] Նույն տեղում։

*«Ասի շաղկապ և ոգի, զի զկապն դնելով կենդանացնէ զբանն...»,—եզրակացնում է նա։*

*Աշխարհի սկզբնավորումից իվեր տեղի ունեցած բոլոր եղելությունների ու երևույթները հնարավոր չէ միանգամից մտածողության մեջ ընկալել կամ հաղորդել ունկնդրին, ինչպես ճիշտ կերպով վկայում է Վարդան Արևելցին։ Բայց այդ հնարավորությունը իրականացվում է շնորհիվ շաղկապի* զոդավոր դերի, *որով ոչ միայն աշխարհի սկզբնավորումից առ այսօր տեղի ունեցած դեպքերն ու իրադարձություններն են հաղորդելի դառնում, այլև մտածողության ամբողջ գործունեությունը՝ մինչև անգամ ամենախորին մտքերի շարահարումով։ Ահա թե ի՛նչ է նշանակում շաղկապը մտածողության և լեզվի համար՝ Վարդան Արևելցու ընդհանրացմամբ։ Նման բնութագրումը, անշուշտ, սպառիչ է և իր ընդհանրացման գիտականությունը պահպանում է նաև ժամանակակից քերականագիտության մեջ։ Ընդսմին մտքերի և նախադասությունների համախմբում կատարելը մտածողության մեջ հնարավոր է դառնում հենց շաղկապի համախմբող («չոկաման») հատկանիշի* բացառիկ *դերի շնորհիվ. ըստ որում շաղկապի՝ եղելություններն ու մտածությունները համախմբելու կարողությունը ճիշտ կերպով անսահմանափակ («անհուն») է դիտվում մեր հեղինակի կողմից. «Իսկ* չոկամանդ անճուն իմն է *ըստ երկուց աւրինակաց,—գրում է Վարդան Արևելցին,—*կա՛մ որ ի սկզբանէ աշխարհի լինեալ են իրf մինչև ցայժմ ի մէջ առնուցու՝ վերաբերելով և չոկչոկ ամանես ի լսաւղն. և կա՛մ՝ ի fէն ինչ մտածելով խորինս բաներս ամանես ի fեզ և ի պատեհ տեղաց յառաջ բերես»[156]: *Ընդգծված տողերի ենթատեքստից բխում է նաև առհասարակ լեզվի գործառույթի բնութագրման ճշգրտությունը. Վարդան Արևելցին, իբրև նախադրյալ, ելնում է այն պատկերացումից, որ լեզուն իր արտահայտչական կարողությամբ* ճամապարփակ *է. լեզուն այնքան հզոր է և ամենակարող, որ ի վիճակի է իմաստավորելու և հաղորդելու աշխարհի սկզբնավորումից տեղի ունեցած բոլոր դեպքերն ու եղելությունները և մտածողության համապարփակ ընդգրկումներն անգամ...։ Լեզվի էության նման ըմբռնումը միայն հիացք կարող է առթել ժամանակակից յուրաքանչյուր լեզվաբանին։*

*Այնուհետև. շաղկապը բառերի և նախադասությունների միջև կիրառվելիս խոսողության կամ հաղորդման ընթացքը արագացնում է,—իրավացի հիմքով պնդում է Վարդան Արևելցին։ Շաղկապը, ասում է նա, իրենով հարակցված բառերի և նախադասությունների սերտաճմամբ «կլանում» է վերջիններիս միջև առկա անխուսափելի դադարները. «չունչ և ոգի կլանէ ինքն ի յասելն, որպէս՝* ես, դու՝ բաժանած բանf են. *իսկ* ես և դու՝ միաւորեաց և-*ն»*[157]: *Սա չափազանց նուրբ դիտում է, որ բխեցված է խոսողության տարբեր այլակների (վարիանտների) առանձնահատկությունների բացահայտումից, որի նշանակությունը ակնբախ է հեղինակի լեզվաբանական հետախուզումների բնույթն ըմբռնելու տեսակետից։*

*Հարկ է նշել, որ Վարդան Արևելցին սկզբում շաղկապների տեսակներին անդրադառնում է ընդհանուր կարգով, որպես առհասարակ տեսական հարցադրման բաղկացուցիչ մասերի, այնուհետև՝ առանձին-առանձին, բայց*

---

156 *Սույն աշխատությունը, էջ 150։*

157 *Նույն տեղում։*

չկրկնելով լիովին իր նախորդներին, իսկ շատ դեպքերում էլ՝ նոր և առավել հանգամանալից մեկնություններ տալով Թրակացու համապատասխան ասույթների վերաբերյալ։

Շաղկապի քննությամբ էլ ավարտվում է ձևաբանության տեսությունը Վարդան Արևելցու (և ոչ միայն Վարդան Արևելցու, այլև մեկնողական բոլոր մյուս երկերում) քերականական Մեկնությունը։

Ինչ վերաբերում է **Առոգանության** և **Տաղաչափության** ուսմունքներին, որոնք անբաժանելի մասն են կազմում յուրաքանչյուր քերականական մեկնության, ապա պետք է ասել հետևյալը.

ԱՌՈԳԱՆՈՒԹՅԱՆ տեսությունը Վարդան Արևելցին շարադրում է ըստ Ստեփանոս Սյունեցու, որի մտքերը ամփոփված են Մագիստրոսի Մեկնության մեջ[158]։ Նկատենք, որ Վարդան Արևելցին, հանդես չբերելով արդեն հայտնի դրույթներում որևէ նորույթ, բավարարվում է պարզապես առոգանության տեսության վերարծարծմամբ։

ՏԱՂԱՉԱՓՈՒԹՅԱՆ տեսությունը («Յաղագս ոտից») ներկայացնելիս, Վարդան Արևելցին օգտվել է, հիմնականում, Մովսես Քերթողից (իր նախորդներից մյուս մեկնիչները չունեն այս տեսությունը), բայց հարցադրումների ազատ վերաշարադրմամբ։

Չափածո խոսքի կառուցման տեսական հարցադրման առումով, սակայն, Վարդան Արևելցին ունի նաև ինքնուրույն մեկնաբանություն, որ նա շարադրել է իր Մեկնության այլ բաժնում։ Թրակացու՝ «Եւ զտաղն քաջոլորակի» ասույթը մեկնաբանելիս, Վարդան Արևելցին բնութագրում է «պատշաճագոյն» և «դիպաւոր» տաղերի առանձնահատկությունները. տաղի ներդաշնակ ելևէջների համար նախապայման է համարում տաղի եղանակային զուգորդությունների ներդաշնակությունը՝ ինչպես տեղի, այնպես և ճշտության առումներով, իսկ նման արդյունքի հասնելու համար անհրաժեշտ է տաղի բառերի վանկային քանակի համապատասխան չափի խստիվ պահպանումը՝ ըստ տաղաչափության կանոնների. «Տաղին եղանակն շարայարմար պիտի,—գրում է Վարդան Արևելցին,— որ քաղցր գայ և՛ ելն, և՛ էջն՝ ի տեղի և ուղղորդ, և զբառն՝ չափաւոր ըստ չորք արուեստին»[159]։ Իսկ չափածո խոսքի կատարելության կարելի է հասնել այն դեպքում, ասում է Վարդան Արևելցին, երբ բառի՝ նրա վանկային քանակությամբ, ձայնավորային բնույթով և վերջավորությամբ պայմանավորված հանգավորումը, ներդաշնակ եղանակավորումը, իմաստը և ոտների քանակը իրար համապատասխանեն («յոճի լինին»).— հենց սրանք էլ կազմում են «պատշաճագոյն և գլխաւոր» տաղերի ստեղծման նախադրյալները. «Եւ յորժամ բառն և եղանակն և միտքն և ոտանցն չափն ի յոճի լինին՝ նա ապա լինին տաղքն պատշաճագոյնք և դիպաւորք»[160]։

4. **Շարահյուսագիտական հայացքներ**:— Վարդան Արևելցին, ինչպես քերականական իր Մեկնության մեջ ձևաբանական հարցերի քննության ժամանակ, այնպես և «Վասն բանին մասանց» փոքրիկ երկում արծարծում է շարահյուսագիտական ուշագրավ մտքեր։

**«Մեկնութիւն քերականի»** աշխատության մեջ Վարդան Արևելցին նախա-

---

158 Տե՛ս Մաշտոցի անվան Մատենադարան, ձեռ. № 3917, թթ. 121բ—124ա։

159 Նույն աշխատությունը, էջ 78։

160 Նույն տեղում։

դասությունը դիտում է իբրև «սեռ», այսինքն՝ ծավալուն ընդհանրություն, որն իր մեջ պարփակում է խոսքի նվազագույն միավորները՝ խոսքի մասեր հանդիսացող բառերը. նախադասության տեսական ձևակերպումը նա տալիս է այսպես. «Զի բանն որպէս սեռ է, որ կարէ բազում մասունս ծնանիլ ինքնանման...»[161]: Իր այս նույն միտքը Վարդան Արևելցին հիմնավորում է խոսքի միավորը (այսինքն նախադասությունը՝ «բան»-ը)՝ վերջինիս նվազագույն միավորի՝ բառի հետ համեմատելիս՝ ընդգծելու համար նրանց ծավալային հարաբերությունը խոսքում. «...յորժամ զբառն ընդ բանն կշռես,—գրում է նա,— նա փոքր է բառն քան զբանն»[162]:

Շարահյուսագիտական ուշադրավ հարցադրում է և այն, որ ընթերցելիս, խոսելիս կամ գրելիս անհրաժեշտ է նախադասության անդամների հարաբերությունը ճիշտ ըմբռնել և ըստ այնմ «բաժանել» դրանք՝ նման այն հմուտ մսագործին («արուեստաւոր խոհակերին»), որը խելամտորեն է բաժանում ոչխարի զանազան մասերը: Այս առթիվ Վարդան Արևելցին գրում է. «Ըստ արուեստաւոր խոհակերին, զի խոհակերն «մսագործ» ասի, որ իմաստութեամբ բաժանէ զոչխարին յաւդուածսն. և ամէն յաւդուած զիւր միսն ունենայ և չելնէ այնոր միսն ի յայն, կամ այնոր՝ ի յայն, և միւս անդամոյն՝ ի միւս այլ անդամն: Այս աւրինակաւս լինի ընթերցաւղն և խաւսեցաւղն, նաև գրագիրն ևս»[163]:

Վարդան Արևելցու շարահյուսագիտական ըմբռնումներն առավելապես դրսևորվում են շաղկապի ուսմունքը շարադրելիս: Եվ դա միանգամայն բնական է: Նա շատ ճիշտ պատկերացում ունի այն մասին, որ մտածությունները և նրանց լեզվական արտահայտությունը հանդիսացող նախադասությունները կառուցվում և փոխադարձաբար տրամաբանական համապատասխանությամբ շարակցվում են ըստ որոշակի կարգավորության: Նշանակում է՝ Վարդան Արևելցին ունեցել է լեզվի ներքին կառուցվածքի միավորների միջև համաձայնության առկայության ըմբռնում, որն ուրիշ բան չէ, եթե ոչ շարահյուսագիտությունն իբրև գիտակարգ (դիսցիպլին): Նա գրում է. «Եւ «շաղկապ» ասի ի շաղղելոյ և միաւորելոյ և կապելոյ Ի ԿԱՐԳԻ զբառն ընդ բառն և զմիտս ընդ միտս»[164]: Ինչպես նկատելի է, Վարդան Արևելցին, շաղկապի «կապական» դերն ընդգծելիս, ոչ թե նրա սոսկ «կապական» գործառույթն է նշում մտածության («տրամախոհութեան») հարաբերությամբ, ինչպես Թրակացու մոտ է, այլ նրա տրամաբանական համաձայնությամբ («ի կարգի») պայմանավորված կապական գործառույթը մտածությունների և նախադասությունների միջև:

Ավելին. Վարդան Արևելցին գտնում է, որ մտածությունը, լինելով նախադասության իմաստային բովանդակությունը, ընդարձակվել կամ ծավալվել կարող է շարահյուսական ամենաէական միջոցի՝ շաղկապի շնորհիվ[165]:

Հատկապես շաղկապների տեսակները բնութագրելիս Վարդան Արևելցին համապատասխանաբար կազմում է բարդ նախադասությունների նմուշներ, որոնք վկայում են հեղինակի շարահյուսագիտական ըմբռնումների առավել լայն ընդգրկման մասին, քան իր նախորդները. նա առաջ է բերում՝

161 Նույն աշխատությունը, էջ 101:
162 Նույն տեղում:
163 Նույն տեղում, էջ 77:
164 Նույն տեղում, էջ 150:
165 Տե՛ս նույն տեղում:

*ա) Իբրև միավորիչ («շղկաման») նախադասություններ՝* «Ես և դու երթանք առ թագաւորն», «Գնացի և եկի» *պարզ ընդարձակ և միավորյալ համադասական նախադասությունները, «Թէպէտ զաւրաւոր էր, յաղթեցաք սուլտանին», «Թէ երէկ չեկիր, գոնեայ այսաւր եկ» զիջական բնույթի ստորադասական նախադասությունները։*

*բ) Իբրև տրոհական («անջատական») նախադասություններ՝* «Կամ դու, և կամ ես, և կամ թէ չէ դա [առնիցէ]» *նմուշները։*

*գ) Իբրև պայմանի և զիջական բնույթի բարդ ստորադասական նախադասություններ («բաղմատ»)՝* «Թէ դու չգնաս, դա գնայ», «Թէպէտ որ խելաւք ես, այլ զքեզ չգիտես»:

*դ) Իբրև պատճառի և հիմունքի («տարբաղմատ») բարդ ստորադասական նախադասություններ՝* «Քանզի դու բերեր ինձ ոսկի, տամ ես քեզ ակն պատուական»:

*ե) Իբրև հարցական բնույթի պարզ նախադասություններ («փաստաբանականք» և «տարակուսականք»)՝* «Զի՞ եղև քեզ», «Ուպէ՞ս ուշացար», «Վասն որո՞յ յամեցեր», «Վասն զի՞ չվախեցեր», «Ըստ ո՞րքան ուժոյ չերկեար դու». «Արդէք ի՞նչ եղաւ, ապա ուրեմն ճիւանդացա՞ւ», «Իսկ ընդէ՞ր առաքեցի զնա», «Զմէ՞ անգիտացայ, որ ծոյլ և անարի էր»:

*զ) Իբրև մակաբերական, ներհակական, ժամանակի, պատճառի և հիմունքի («բաղբանական») նախադասություններ (պարզ և բարդ ստորադասական բնույթի)։* «Արդէք *այդր աղագաւ յամեցեր,* ուրեմն *չէին իրաւ զրպարտաւղքն քո», «*Այսուհետև *հաւանեալ եմ քեզ», «*Վասն որոյ *այլ ոչ եղից ունկն քոյոց թշնամեացն, զի դու ճշմարիտ ես»։*

*է) Իբրև զիջական բնույթի («ընդդիմակք») բարդ ստորադասական նախադասություններ՝ «Սակայն* թէպէտ *որ կոուաւղ էր, յաղթեցի», «Համայն* թէև *արագ էր, յառաջեցի ես զնա»։*

*ը) Իբրև պայմանի և համեմատության բնույթի («վարանականք») բարդ ստորադասական նախադասություններ՝* «Թէ մեկնիչ քաջ ոչ եղէ, [գէթ] ինձ բանիկ ուսանիմ», «Թէ կարդացաւղ չկարեմ լինել զովելի, գոնեայ յամաւթոյ զերծայց», «Թէ ի քաղաքն չճասի, փարթար փութալի է, զի ի գեաւղ ճասից ի յորս»:

*Որպես եզրակացություն այս հատվածի, անհրաժեշտ ենք համարում նշել հետևյալը. չնայած նրան, որ Վարդան Արևելցու մի այլ՝ բանասիրությանը «Վասն բանին մասանց» վերնագրով[166] հայտնի փոքրածավալ երկը հայ քե-*

---

[166] *Նույն վերտառությամբ, իբրև* առանձին աշխատություն *Վարդան Արևելցու, լույս տեսավ նշված բնագիրը ՀՍՍՀ ԳԱ «Տեղեկագրում» (1943, № 2, էջ 80—88) ակադ. Լ. Ս. Խաչիկյանի կողմից՝ 4 ձեռագրերի քննական համեմատությամբ և համապատասխան առաջաբանով։ Որպես այդպիսին ընդունվեց այն և լեզվաբանական քննության ենթարկվեց հայ քերականական մտքի պատմությամբ զբաղվողների կողմից (տե՛ս* Գ. Ջահուկյան, *նշված աշխատ., էջ 252—255,* Ս. Ղազարյան, *Միջին հայերեն, գիրք առաջին, 1960, էջ 122—124,* Լ. Խաչերյան, *Հայ շարահյուսագիտական մտքի վաղ շրջանի պատմությունից, «Բանբեր Մատենադարանի», 1962, № 6, էջ 113—115)։ Վերջերս, սակայն, երկէջանոց այս բնագրի առնչության բնույթը մեկնաբանվեց այլ կերպ, որը, բնագրագիտական առումով, ճիշտ չէ։ Առաջ քաշվեց այն պնդումը, որ, իբր, խնդրո առարկա բնագիրը ոչ թե ամբողջական մի առանձին երկ է, այլ Վարդան Արևելցու՝ դարձյալ Հեթում Ա թագավորի պատվերով գրված «Ժղլանք»-ի մի հատվածն է միայն։ Այս առթիվ բանասիրական գիտությունների թեկնածու Փ. Անթաբյանը գրում է. «Վաղ շրջանի հայ քերականագիտության պատմության մեջ նշանակալից տեղ են բռնում Վարդան Արևելցու քե-*

բականագիտության մեջ գնահատվում է որպես հայոց լեզվի շարահյուսության սկզբունքների առաջին ինքնուրույն փորձը, իր շարահյուսական հարցադրումներով շատ ավելի աղքատիկ է, քան նույն հեղինակի «Մեկնութիւն քերականի» երկում արծարծված շարահյուսական ըմբռնումները, որ քննեցինք վերը։

## II. ԲՆԱԳՐԱԳԻՏԱԿԱՆ ՔՆՆՈՒԹՅՈՒՆ «ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՔԵՐԱԿԱՆԻ» ԵՐԿԻ

Այս գլխում երեք հիմնական հարցեր ենք քննում. ա) երկու խմբագրություններից՝ հեղինակայինի բացահայտումը, բ) հեղինակային երկում օգտագործված աղբյուրների վերհանումը, գ) բնագրական կառույցի ճշտումը։

Ա. Երկու խմբագրություններից՝ հեղինակայինի բացահայտումը։— Քննական համեմատության մեջ մեր դրած «Մեկնութիւն քերականի» երկի բնագրական ընդօրինակությունները, որոնք պարփակված են տարբեր գրչագրերում, իրենց ընդհանուր և էական առանձնահատկություններով ծածկում են իրար՝ ներկայացնելով իրենցից որպես տեքստային միևնույն խմբագրության առանձին արտագրումներ։ Այդ իսկ պատճառով Վարդան Արևելցու քերականական Մեկնության վերականգնողական աշխատանքներում և նրա գիտական բնագրի պատրաստման համար նրանք ունեցել են միմյանց լրացնող և բացահայտող նշանակություն՝ տարընթերցումներից ստուգագույնը պարզելու

---

բականական երկու աշխատությունները՝ «Մեկնութիւն քերականին» և «Վասն բանին մասանցը»։ Թեև երկուսն էլ գրվել են Հեթում Ա. թագավորի խնդրանքով, բայց մենք քննության կառնենք վերջինը, քանի որ այն... «Ժղլանքի» անմիջական մասն է կազմում» (տե՛ս «Բանբեր Մատենադարանի», № 8, 1967, էջ 172, նաև՝ 161 և 162 էջերը. ընդգծումները մերն են—Լ. Խ.)։ Նման պնդումը, սակայն, երկու կարգի առարկություն է վերցնում.

Առաջին՝ միայն «Մեկնութիւն քերականին» և «Ժղլանք» աշխատությունները ստեղծվել են Հեթում թագավորի պատվերով, որոնց մասին հավաստի վկայություններ կան ինչպես հեղինակի, այնպես և դրանք ընդօրինակող գրիչների կողմից, սակայն «Վասն բանին մասանց» փոքրիկ երկի պատվիրատուն, համաձայն ձեռագրական հավաստումների, ոչ թե Հեթում թագավորն է, այլ Կոստանդին կաթողիկոսի եղբորորդին՝ Թորոսը։ Այսպես, սույն բնագրի երկու ընդօրինակությունների վերնագրերում որոշակի հուշված է, թե նրա պատվիրատուն ո՛վ է. Մաշտոցի անվան Մատենադարանի № 2189 ձեռագրի թ. 292բ-ում կարդում ենք. «Վասն բանին մասանց ի խնդրոյ բարեզարդ քահանայի Թորոս անուն կոչեցելոյ եղբաւր որդւոյ Տեառն Կոստան[դ]եայ Հայոց կաթողիկոսի ի Վարդանայ Աղւանեցւոյ կարճառաւտ»։ Իսկ № 1784 ձեռագրում ամփոփված սույն բնագրի վերնագիրը նույնպես հավաստում է, որ այն գրված է «ի խնդրոյ բարեզարդ քահանայի Թորոս անուն կոչելոյ եղբօրորդւոյ տեառն Կոստանդեայ հայոց կաթողիկոսի ի Վարդանայ Աղվանեցոյ կարճառօտ» (թ. 206ա)։ Այստեղից ինքնըստինքյան բխում է, որ եթե տարբեր պատվիրատուներ են եղել «Ժղլանք»-ի և «Վասն բանին մասանց» երկերի ստեղծման համար, նշանակում է, որ նշված աշխատությունները ոչ թե միևնույն երկի բաղկացուցիչ մասերն են, այն էլ՝ «անմիջական», այլ՝ տարբեր երկասիրություններ են։ Դրա օգտին է խոսում և այն, որ «Վասն բանին մասանց»-ը արդեն իսկ բնութագրվում է իբրև «կարճառօտ» երկ, որով և արդարացվում է նաև նրա չափազանց փոքրածավալ լինելը։

Երկրորդ. «Վասն բանին մասանց» երկի «Ժղլանք»-ի անմիջապես շարունակությանը ընդօրինակվելը հատ ու կենտ գրչագրերում դեռևս բավարար հիմք չէ այն համարելու որպես միևնույն աշխատության «անմիջական մասեր»՝ այն դեպքում, երբ այդ երկը «Ժղլանք»-ի բազմաթիվ ընդօրինակություններում իբրև պատահականորեն հարակցված շարունակություն՝ բացակայում է։

Կարծում ենք, որ գիտական շրջանառության մեջ դնելով այս բնագիրը առանձնաբար՝ միանգամայն ճիշտ է վարվել պրոֆ. Լ. Ս. Խաչիկյանը՝ լեզվաբանների ուշադրությունը հրավիրելով Վարդան Արևելցու շարահյուսագիտական հայացքների վրա։

*խմաստով։ Ուստի և դրանք պայմանականորեն համարում ենք* առաջին խըմբագրության տարբերակներ։

*Մեր հետախուզումների ընթացքում, սակայն, հանդիպեցինք նաև մի գըրչագրի, որի պարփակած համանուն տեքստը բնագրագիտական տեսակետից բոլորովին նոր խմբագրություն է ներկայացնում, որը և պայմանականորեն* երկրորդ խմբագրություն *ենք համարում։ Այդ գրչագիրը պահվում է Մաշտոցի անվան Մատենադարանում՝ 2283 թվահամարի տակ, նոտրագիր, մոտավորապես XVIII դարի ընդօրինակություն՝ Հակոբակ գրչի կողմից։ Նրա հիմքային օրինակը եղել է XIII—XIV դարերի մի գրչագիր։ Այս նոր խմբագրության լեզուն, իր բնորոշ առանձնահատկություններով, գերազանցապես կիլիկյան հայերեն է, ի տարբերություն միջնադարի վարդապետարաններում Վարդան Արևելցու անունով առավել լայն ճանաչում գտած քերականական Մեկնության, որն իր լեզվական հատկանիշներով, ըստ էության, գրաբարյան է։*

*Այս երկրորդ խմբագրության ստեղծման ժամանակի մասին տարակույսը, սակայն, փարատվում է. գրչագրի մանրախույզ ուսումնասիրումից պարզվում է, որ այդ խմբագրությունը կազմվել է 1335 թվականին։ Այսպես, գրչագրի 126ա էջում պահպանված հիշատակարանի ընթերցումը ակներև հստակություն է մտցնում ինչպես նախօրինակ գրչագրի առկայության փաստի, այնպես և այդ նախօրինակ գրչագրի թվագրման մասին։ Բացորոշ է դառնում, որ Հակոբակ գրիչը որպես հիմք-օրինակ է ունեցել մի գրչագիր, որը կրել է 1355 («ՊԴ») թվականը. «...* ի թվ. ՊԴ (1355) գրեցաւ յունիս ամսոյ ԻԹ (29)-ին։ *Յակոբակս ողորմելի...»*[167]*։*

*Բայց և այնպես հնարավոր է ենթադրել, որ № 2283 գրչագրի համար նախօրինակ հանդիսացած գրչագիրը, իր հերթին, ունեցած լինի նաև վաղագույն ժամանակաշրջանի մի գաղափարատիպ գրչագիր, որը հասած չլինի մեզ՝ անագորույն ժամանակների քմահաճույքի պատճառով, ուստի և մոտահայեցողաբար ընդունենք մի պահ, որ այն հեղինակված լինի ոչ թե ստուգապես 1355 թվականին, այլ՝ ավելի վաղ։*

*Արդ, հարց է ծագում. մեզ հասած այս երկու խմբագրություններից ո՞ր բնագիրն է իրոք Վարդան Արևելցու գրչին պատկանում։ Բնագրագիտական այս հարցադրման ճիշտ լուծումից է կախված այն, թե այս երկու խմբագրություններից ո՞րը իբրև հարազատ բնագիր պետք է ներկայացնել գիտական հասարակայնությանը՝ վերանայելով մի պահ դրանցից յուրաքանչյուրի ունեցած գրչագրական ընդօրինակությունների քանակային հարաբերությունից։*

*Բնականաբար՝ առաջին հայացքից պիտի թվա, թե Վարդան Արևելցու հեղինակածը հենց այն խմբագրությունն է, որը ներկայացված է № 2283 գրչագրով, քանի որ, ինչպես բնագրական արտագրումները իրենց վերնագրերում հավաստում են, Վարդան Արևելցին իր այս աշխատությունը հեղինակել է Կիլիկիայի Հեթում Ա. թագավորի պատվերով, ուստի և իր Կիլիկիայում գտնված ժամանակ, և, ինքնին հասկանալի է, քերականական այս Մեկնությունը իր արտագրումներով ավելի շատ կիրառություն պետք է գտած լիներ կիլիկյան վարդապետարաններում և, առաջին հերթին՝ արքայական վարդապետարանի ուսումնականների համար։ Այստեղից էլ հետևություն՝ Վարդան Արևելցին իր երկասիրությունը գրած պետք է լիներ կիլիկյան հայերենով, ուստի և առաջ-*

---

[167] *Մաշտոցի անվան Մատենադարան, ձեռ. № 2283, թ. 126ա։*

*Նայինն ու Հարազատը պետք է լիներ ա՛յն բնագիրը, որը պայմանականորեն անվանում ենք «կիլիկյան խմբագրություն»։ Այս հավաստումը ճիշտ կլիներ, անշուշտ, միայն տրամաբանական հայեցողությամբ..., բայց ո՛չ բնագրագիտական տեսակետից՝ փաստերի ու բնագրական հանգամանքների խորաքնին ու մանրակրկիտ դիտարկումից բխեցված հետևություն որպես, այդ իսկ պատճառով նման հայեցակետի ճշտությունը երկբայելի է։*

*Իրականում՝ բանասիրական մեր հետախուզումները լիովին և անհերքելիորեն հանգեցնում են բոլորովին այլ հետևության. Վարդան Արևելցու հեղինակած բնագիրը, մեր խորին համոզմամբ,* միայն ու միայն *«գրաբարյան լեզվով»*[168] *շարադրված խմբագրությունն է, որին հետևում են գրչագրական համարյա բոլոր ընդօրինակությունները։*

*Իսկ ի՞նչ հիմքեր ունենք նման պնդման հավաստիությունը ապացուցելու և անտարակուսելի համարելու համար։*

*ա) Ամենից առաջ՝ լեզվական առանձնահատկությունների հաշվառումը մեկնակետային նշանակություն ունի երկու խմբագրություններից որևէ մեկի հեղինակային լինելը բացահայտելու և ճշտելու տեսակետից։ Բոլոր հիմքերն ունենք ասելու, որ հենց «գրաբարյան» խմբագրությունն է Վարդան Արևելցու հեղինակածը, քանի որ այն համերաշխվում է մեր դպրության մեջ առավել վաղ շրջանում գոյություն ունեցած քերականական մեկնությունների լեզվական ընդհանուր բնույթի՝* գրաբարյան *ավանդույթի հետ։ Ընդսմին նկատենք, որ ինչպես նախընթաց, այնպես և հետընթաց շրջանի քերականական մեկնությունները, ընդունված խիստ ավանդույթի համաձայն, հեղինակվել են միայն ու բացառապես գրաբար հայերենով՝ չնայած միմյանց նկատմամբ ունեցած տարբեր ժամանակաշրջանների լեզվամտածողությամբ պայմանավորված բառա-ոճական խայտաբղետություններին ու տարբերություններին։ Եվ դա հասկանալի է։ Այլ կերպ չէր էլ կարող լինել. մեկնությունները տրվում են դասական հայերենի իրողությունների բացահայտման ու վերլուծման միտումով՝ տեսական դրույթների ու ընդհանրացումների համար մեկնակետ ունենալով փիլիսոփայության, տրամաբանության և արվեստների տեսության հիմնարար առանձին սույթներն ու վաղնջական ժամանակների ժողովրդական բանահյուսության, ինչպես նաև մատենագրության տեսության հարցադրումները։ Ըստ որում՝ քերականության ուսուցումը միջնադարում ոչ թե ինքնանպատակ հետաքրքրություն է եղել, այլ գրաբարի ուսուցման միջոցով դասական մատենագրության հմտացում արմատավորելը ուսումնականների մեջ։ Ի հավելումն այս փաստարկին նշենք նաև, որ գիտությունների գերակշիռ մասի լեզուն ընդհանրապես և առանձնապես միջնադարի մեր* դպրության մեջ *ընդունված էր միայն գրաբարը՝ ինչպես պատմական Հայաստանում, այնպես և Կիլիկիայի հայկական թագավորության սահմաններում, ուստի և այդ ավանդույթը խախտելու ոչ մի իրավական և բարոյական շարժառիթ չէր կարող ունենալ Վարդան Արևելցին, մանավա՛նդ, երբ նկատի ունենանք նաև վերջինիս մատենագրական վաստակի ծանրակշիռ մասը, որ նույնպես գրաբարյան հայերենով է։ Այստեղից ինքըստինքյան բխում է, որ գիտական քիչ թե շատ լուրջ*

---

[168] *Ի դեպ, չակերտների մեջ ենք դնում այս խմբագրության գրաբարյան լինելը այն նկատառումով, որ այս հեղինակային խմբագրության լեզուն նույնպես զուտ գրաբարյան չի հնչում. նրանում առանձին դեպքերում արտացոլված է հեղինակի «Կր» ճյուղի պատկանելությունը. բայց երկրորդ խմբագրության հարաբերությամբ, իր լեզվական իրողություններով, այն գերազանցապես գրաբարյան է։*

փաստարկում չի կարող ծառայել այն ենթադրությունը, թե քանի որ Կիլիկիայի Հեթում Ա արքայի և Զապել թագուհու համար է նախատեսված եղել Վարդան Արևելցու քերականական Մեկնությունը, հետևաբար այն պետք է գրված լիներ կիլիկյան հայերենով։

բ) Բացի դրանից, որ և ամենակարևորն է՝ ունենք նաև բնագրագիտական ապացույցներ ու փաստարկներ հօգուտ այն հավաստման, որ Վարդան Արևելցու հեղինակածը «գրաբարյան» խմբագրությունն է, իսկ կիլիկյան խմբագրությունը՝ հետագայի՝ այլ գրչի կողմից ձեռնարկված և «գրաբարյան» խմբագրության հիման վրա կատարված հախուռն և փութկոտ մոտեցման արգասիք է: Այսպես, «գրաբարյան» խմբագրության մեկնողական շարադրանքի ձևակերպումները անհամեմատ ավելի մշակված են, կուռ և լիարժեք, որով և գիտական խոսքի բնույթ են հաղորդում նրա բնագրին։ Մինչդեռ կիլիկյան խմբագրության շարադրանքի ձևակերպումները թույլ և տարտամ են ու շատ անգամ՝ կիսատ-պռատ, որով ակնբախորեն երևում է այդ երկուսի որակական տարբերությունը. ինչ խոսք, վերջինս մեծապես զիջում է առաջինին։ Ասվածի համոզչականության համար բերենք մի երկու փաստ.

| «Գրաբարյան» խմբագրություն | Կիլիկյան խմբագրություն |
|---|---|
| 1. «Եւ ահա աստ պարզէ զվերին յիշեալ ենթադատութիւնն, որ դատես և պարզես զբանն վասն ում որ լինի, և բաժանես ըստ մարդոյն ոճոյն՝ եթէ զոռոզ և եթէ ողոք»։ (Սույն աշխ., էջ 76)։ | «Ահա ազա կու պարզէ զվերի յիշեալ ենթադատութիւնն, որ դատես ու պարզես զբանն վասն ում ոչ լինի՝ ըստ մարդոյն ոճոյն թէ զոռոզ թէ ողոք»։ (Ձեռ. № 2283, թ. 5ա)։ |
| 2. «Որ տաս այնմ, որում և կամիս՝ ըստ ոճոյն, որպէս և վերագոյն ասացաւ»։ (Սույն աշխ., էջ 100)։ | «Որ տաս ումն այն որպէս այլ է վերագրած...»։ (Ձեռ. № 2283, թ. 5ա)։ |

Այս զուգադիր հատվածների թեկուզ և թռուցիկ համեմատությունից ցայտունորեն երևում է, որ ստուգագույն ընթերցումը մեկնողական խոսքի՝ ներկայացնում է «գրաբարյան» խմբագրությունը. ձևակերպումների գիտական հստակությամբ ու ճշգրտությամբ անտարակուսելիորեն նա գերազանցում է կիլիկյան խմբագրության ձևակերպումներին։

Ավելին. կիլիկյան խմբագրության «հեղինակի» անգրագիտությունը երբեմն այնքան ակնհայտ է, որ ապշեցուցիչ չափերի է հասնում։ Նա առանձին բառեր ու քերականական տերմիններ խիստ աղճատված է ներկայացրել, որով և բնագրի որակը զգալապես տուժել է։ Օրինակ՝ «Նուրբն բարակն է, նաւսրն, որ մերկ և ցոփայն (ˆ) հանէ...», փխ. «ցոփ ձայն հանէ» (թ. 10 բ). «Երկար փաղաւորութիւն (ˆ) հանէ...» փխ. «Երկար փաղառութիւն»... (թ. 13ա), «Թէպէտ յումէպէր» փխ. «թէպէտ յումպ էր» (թ. 16բ), «Եւ բան իմաստունք են ութ», փխ. «Եւ բանի մասունք են ութ» (թ. 17ա), «քերանուն» փխ. «դերանուն» (17ա), և այլն։ Ավելին. երբեմն և անհեթեթության հասնող անգրագետ ձևակերպումներ է հրամցնում նա. այսպես՝ «... և ինդ է ուրեք, որ դատաստան է քան զհիւանդ» (թ. 9բ) փխ. «... և ինդ է ուրեք, որ դասական է, քան զհիւնդ»...:

Բացառված չէ, անշուշտ, որ նման աղավաղումների ու թերըմբռնումների պատասխանատվությունը մասամբ ընկնի նաև 2283 թվահամար ձեռագրի գրչի վրա. սակայն հակված ենք մտածելու, որ դրանց գերակշիռ մասը անդրադարձված պետք է լինի գաղափարատիպ օրինակից։ Մանրակրկիտ համեմատությունը № 2283 գրչագրում ամփոփված ինչպես այս բնագրի, այնպես

*և այլ նյութերի հետ գրչի հմտության աստիճանը «գրչության արվեստում» պարզելու նպատակով, ցույց է տալիս, որ ի տարբերություն Վարդան Արևելցու քերականական Մեկնության, Հակոբակ գրիչը ուղղագրական կանոնների հմտությամբ է գրչագրել մյուս նյութերը։ Իսկ այդ նշանակում է, որ կիլիկյան խմբագրության մեջ նկատված քերականական տերմինների ու բառերի աղճատումները ոչ թե № 2283 ձեռագրի գրչինն են, այլ այդ գրչագրի հենց գաղափարատիպ օրինակին, որը մեզ չի հասել։ Այստեղից կողմնակի մի հետևություն ևս. նման փաստերի առկայությունը կիլիկյան խմբագրության մեջ, անկասկած, արժեքազրկում է այդ բնագրի առաջնային և հեղինակային լինելու հավանականությունը։ Մինչդեռ գրաբարյան խմբագրությունը, իրականում, փայլում է տերմինների ու բառաձևերի ճշգրտությամբ և տեղին գործածությամբ, որով և նրա առաջնային ու հեղինակային լինելու հավաստիությունը առավել քան ընդգծվում է։*

*գ) Որքան էլ տարօրինակ թվա՝ այնուամենայնիվ կիլիկյան խմբագրության որակի օգտին չի խոսում նաև այն փաստը, որ վերջինս, առանձին դեպքերում, «գրաբարյան» խմբագրության համապատասխան հատվածների նկատմամբ, բնաբանների և մեկնությունների ետևառաջություն է հանդես բերում։ Թրակացու՝ իբրև բնաբան ծառայած այն քաղվածքները, որոնք «գրաբարյան» խմբագրությունում ճշտագույն հաջորդականությամբ են տեղադրված համապատասխան մեկնությունների միջև, երբեմն առանց պատճառաբանման՝ մեխանիկորեն ետ ու առաջ են բերվել կիլիկյան խմբագրությունում, որով և մեկի մեկնությունը վերաբերել է մի ուրիշի, որ երբեք չպետք է վերաբերեր՝ խախտելով մեկնվող և մեկնող տեքստերի* համապատասխանությունը*, այդ պատճառով էլ ստեղծվել են անհեթեթ պայմանականություններ մեկնվող և մեկնող խոսքերի միջև։ Սա չափազանց ակնառու և ծանրակշիռ փաստ է մեր այն պնդման օգտին, որ բնագրագիտության տեսակետից առաջնայինն ու հեղինակայինը միայն ու միայն «գրաբարյան» խմբագրությունը պետք է լինի։ Ասվածի կոնկրետացման համար, համեմատության կարգով բերենք միայն մեկ օրինակ.*

| «Գրաբարյան» խմբագրություն | Կիլիկյան խմբագրություն |
|---|---|
| *ԲԱՆ* | *ԲԱՆ* |
| *«Երիր՝ լեզուաց և հնագէտ պատմութեանց առձեռն բացատրութիւն»։* | *«Երիր՝ լեզուոց և հնագէտ պատմութեանց առձեռն բացատրութիւնն»։* |
| *ՄԵԿՆՈՒԹԻՒՆ* | *ՄԵԿՆՈՒԹԻՒՆ* |
| *Որ զազգին հնացեալ Կորճեալքն և զծռութիւնն ի լեզուացն հանէ, զի ի հնոցն ի վեր հաստատած քերականութեամբ, որ է առձեռն բացատրութիւն* ի յանուանցն ճշմարտութիւն, որպէս զբերանունն, զերդ զկայծառ և կամ զշաքր եռաց, որ են բերանունք*: | *Որ զազգին զհնացեալ կարճեալքն և զծռութիւնն ի լեզուացն հանէ, զի ի հնոցն ի վեր է հաստատած քերականութեամբ, որ է առձեռն բացատրութեան։* |
| *ԲԱՆ* | *ԲԱՆ* |
| *«Ձորիր՝ ըստ ստուգաբանութեան գիտ»։* | *«Ձորիր՝ ստուգաբանութեան գիտ»:* |
| *ՄԵԿՆՈՒԹԻՒՆ* | *ՄԵԿՆՈՒԹԻՒՆ* |
| *Որ համեմատես զնոր կտակարանսն ընդ Հինն և կամ թէ ասես Դաւթի կամ Դաւթայ, և կամիս զազնիւն ասես։ Եւ որպէս դէմընդդիմելն է համեմատելն։* | Անուանց ճշմարտութիւն զերդ բերանունն, որպէս զկայծառ կամ շաքր եռաց, որ ես բերանունն*: |

*ԲԱՆ*

*«Հինգերիր՝ համեմատութեան տեղեկութիւն»։*

*ՄԵԿՆՈՒԹԻՒՆ*

Պատելն *«սահմանել» սաէ զասացուածսն, որ երբ գտնուս զումեք շարագրած, դատես՝ եթէ ուղղափառի՞ է, թէ՞ ոչ, կամ թէ բժշկակա՞ն է, թէ՞ աստեղաբաշխական։*

*ԲԱՆ*

*«Վեցերիր՝ դատումն քերթածաց. նաև լաւագոյն է յամենեցուն, որք ըստ ներարհեստիս են»։*

*ՄԵԿՆՈՒԹԻՒՆ*

*Որպէս* թէ այս բանս առաւել պիտանի է այս արուեստիս ճետևողացն և գիտողացն fան զամենայն»**

*(Նույն աշխ., էջ 74—75)։*

*ԲԱՆ*

*«Հինգերիր՝ համեմատութիւն տեղեկութեան»*

*ՄԵԿՆՈՒԹԻՒՆ*

*Որ համեմատես զնոր կտակարանքն ընդ Հին, կամ զերդ ասես՝ Դաւթի կամ Դաւթայ, ու ընտրես ու զլամն ասես, զերդ դէմընդիմել է համեմատելն։*

*ԲԱՆ*

*«Վեցերիր՝ դատումն քերթածած նաև լաւագոյն յամենեցթուցն, որք ներարհեստիս են»։*

*ՄԵԿՆՈՒԹԻՒՆ*

*Դատելն սահմանելն սաէ զասածուածքն, որ երբ գտնուս ումէք շարագրած դատելո՝ եթէ ուղղափառի է թէ ոչ, բժշկական է թէ աստեղաբաշխական,* թէ ապա այս բանս խիստ պիտանի այս արուեստիս ճետևողացն fան զամենայնն»**:

*(Ձեռ. № 2283, թ. 4բ—5ա)։*

*Ի՞նչ է պարզվում այս երկու հատվածների զուգադրումից։*

*Նախ և առաջ՝ երկու էական տարբերություններ է տալիս կիլիկյան խմբագրությունը «գրաբարյանի» նկատմամբ (համեմատի՛ր մեկ ստորակետով և երկու ստորակետով ընդգծված տողերը)։ Այսպես, կիլիկյան խմբագրության երրորդ («երիր») բնաբանի մեկնությունը ոչ թե լիովին համընկնում է «գրաբարյանի» համապատասխան մեկնության ամբողջությանը, այլ նրա մի մասին (մինչև ստորակետը)։ Իսկ «գրաբարյանի» մեկ ստորակետով ընդգծված տողերը դարձել են ինքնուրույն մեկնություն կիլիկյան խմբագրության չորրորդ («Չորիր») բնաբանի մեկնության համար։ Մի անգամ խախտելով մեկնությունների համապատասխանությունը «գրաբարյանի» հարաբերությամբ՝ կիլիկյան խմբագրության մնացած նաև հինգերորդ և վեցերորդ բնաբանների մեկնությունները համընկնում են գրաբարյանի չորրորդ և հինգերորդ բնաբանների մեկնություններին, մինչդեռ բնաբանների փոխհաջորդականությունը մնացել է նույնը։ Իսկ ինչ վերաբերում է կիլիկյան խմբագրության վեցերորդ բնաբանի մեկնությանը, ապա տեքստային այդ հատվածում կատարվել է յուրովի համադրում (համեմատիր երկստորակետով ընդգծված տողերը) «գրաբարյանի» հինգերորդ և վեցերորդ բնաբանների մեկնություններից։*

*Սակայն ինչո՞վ են պատճառաբանվում և կամ հիմնավորվում մեկնությունների հաջորդականության նման անհամապատասխանությունները։ Արդյոք դա նշանակո՞ւմ է, որ առավելությունը կամ գերապատվությունը տեքստային առումով պատկանում է կիլիկյան խմբագրությանը։ Ո՛չ, ամենևին։ Ընդհակառակն, դա միաժամանակ ցույց է տալիս և մատնում նրա նվաստությունը «գրաբարյանի» համեմատությամբ։ Եվ ահա թե ինչո՛ւ։*

*Բնագրագիտական վերլուծությունը տվյալ հատվածների աներկբայորեն ապացուցում է «գրաբարյանի» ճշգրտությունը. նրա բնաբաններն ու մեկնությունները միանգամայն համապատասխանում են բացահայտվողի («բան») և բացահայտողի («մեկնութիւն») իմաստային ճշտագույն հարաբերության*

*իսկ առումով։ Մինչդեռ կիլիկյան խմբագրությունում բնաբանների և մեկնությունների մեխանիկական եռևառաջության պատճառով ստացվել են անհամբիր զուգորդություններ։ Դրանք են.*

*ա) Չորրորդ («Չորիր») բնաբանի մեկնությունը ակնհայտ շփոթության և կամայականության արդյունք է, քանի որ այն ներկայացված է որպես ինքնուրույն մեկնություն և տեղադրված իբրև «ստուգաբանութեան գիտ» բնաբանի մեկնություն։ Մինչդեռ մեկնության այդ հատվածը, ինչպես նկատելի է, արհեստականորեն անջատված է նախորդ՝ երրորդ մեկնությունից, որի տեքստային ընթերցումը առանց դրան ավարտուն չէ, ուստի և առկախ է մնում։ Այդ իսկ պատճառով «գրաբարյան» խմբագրության երրորդ բնաբանի մեկնության տեքստային ընթերցումը միանգամայն սպառիչ է, հետևաբար և՝ ամբողջական ու ճշգրիտ։*

*բ) Կիլիկյան խմբագրության չորրորդ բնաբանի («ստուգութեան գիտ») մեկնությունը անպայմանորեն և անտարակուսելիորեն պետք է լինի իբրև հինգերորդ բնաբանի մեկնություն ներկայացվածը՝ ամբողջությամբ վերցրած, ճիշտ այնպես, ինչպես «գրաբարյան» խմբագրությունում է։ Բանն այն է, որ «ստուգաբանությունը», միջնադարի քերականական տեսության համաձայն, անհնարին է բացահայտել առանց համեմատության մեթոդի. որպեսզի «ազնիվը»՝ ճշտագույնը գտնենք «Դավթի՞, թէ՞ Դաւթայ» բառաձևերից, պետք է իմանանք «ստուգաբանութիւն»,—ասում է Վարդան Արևելցին. իսկ դրան կարելի է հասնել միայն ու միայն այդ բառաձևերի զուգադրմամբ («դէմընդիմել»), այն է՝ համեմատության շնորհիվ։*

*գ) «Գրաբարյան» խմբագրությունում հինգերորդ բնաբանի բովանդակությունը տրամաբանորեն բխում է չորրորդից. այժմ պետք է մեկնել Թրակացու տեքստից՝ ի՞նչ բան է «համեմատութեան տեղեկութիւն» ընթերցումը, որը, ինչպես պարզվեց, «ստուգաբանութեան» էությունն է կազմում։ Վարդան Արևելցու միանգամայն ճիշտ պնդումով՝ «համեմատությունը» հնարավոր է կատարել միայն ու միայն* դատողության շնորհիվ. *լոկ դատումներով կարելի է բացահայտել, թե այս կամ այն առույթը կամ բնագրական հատվածը ի՞նչ բնույթի է՝ բժշկությա՞ն է վերաբերում, թե՞ աստղաբաշխության, տվյալ բառաձևը ճի՞շտ է թե ոչ («ուղղափառ՞ է թէ ոչ») և այլն։ Մինչդեռ կիլիկյան խմբագրության հինգերորդ (նույնական) բնաբանին երբեք չի համապատասխանում մեկնող՝ բացահայտող տեքստը, ուստի և հարցադրումների տրամաբանական հարակցությունն ու հաջորդականությունը միանգամայն անհամոզիչ են։*

*դ) Առավել անհեթեթ ընթերցում է կիլիկյան խմբագրության վեցերորդ մեկնությունը իր բնաբանի հարաբերությամբ, քանի որ նրանում պաշտնորհ կերպով համադրված են, «գրաբարյանի» հարաբերությամբ, հինգերորդ և վեցերորդ մեկնությունները։ Իբրև վեցերորդ բնաբան Թրակացուց առաջբերված այն ճիշտ պնդումը, որ չափածո ստեղծագործությունների («քերթածաց») դատումը լավագույն ձևով կարող են կատարել միայն նրանք, ովքեր քերականական արվեստին հմուտ են կամ հետևող («ներարհեստիս են»), բնականաբար դրա պատասխանը կամ մեկնությունը պետք է պարփակի բացառապես ա՛յն, ինչ դրա տակ պետք է հասկանալ, ինչպես որ միանգամայն ճիշտ ձևակերպմամբ գտնում ենք այն «գրաբարյան» խմբագրության մեկնությունում. «Որպէս թէ այս բանս առաւել պիտանի է այս արուեստիս հետևողացն և գի-*

տողացն քան զամենայն»։ Մինչդեռ կիլիկյան խմբագրության մեկնությունը իր առաջին մասով բոլորովին անհարիր է և միայն վերջին մասով (երկատողանիշով ընդգծված տողերը) առնչվում է բնաբանի հարցադրմանը։

Բնագրական այս ծանրակշիռ ապացույցների քննությունը ոչ մի տարակույս չի թողնում մեր այն պնդման հավաստիության նկատմամբ, որ միայն «գրաբարյան» խմբագրությունն է Վարդան Արևելցու հեղինակային գրչի հարազատ արտադրանքը, իսկ կիլիկյան խմբագրությունը նրա հիմքի վրա առաջացած, հետևաբար և բնագրական իր առանձնահատկություններով դրան ակնհայտորեն զիջող՝ հետագայում ստեղծված մի խմբագրություն է։

Երկու խմբագրությունների մանրակրկիտ համեմատությունը ցույց է տալիս, որ կիլիկյան բնագիրը, ընդհանուր ծավալային առումով միայն հազվադեպ է շեղվում «գրաբարյան» բնագրից, իսկ իր գերակշիռ ծավալով համընթաց է նրան՝ դրսևորելով բնագրական բնույթի (մի կողմ թողնելով տվյալ պահին նրա որակ կազմող լեզվա-ոճական տարբերությունը) մասնակի տարբերություններ, որոնք երբեմն չեն պատճառաբանվում։ Այսպես.

1. Կիլիկյան խմբագրությունը Թրակացու աշխատության հայերեն թարգմանությունից մեջբերած և իբրև բնաբան ներկայացրած ասույթները, գրաբարյան խմբագրության հարաբերությամբ, առանձին դեպքում միացնում է իբրև մեկ բնաբան՝ մասնակի մեկնության համար, այլ կերպ ասած՝ երբ դրան վերագրած մեկնությունը բնաբան-ասույթի միայն մեկ մասին է վերաբերում, և ոչ՝ ամբողջին։ Ասվածի ճիշտ ընկալման համար զուգադրենք երկու խմբագրություններից էլ թեկուզ մեկ հատված.

«Գրաբարյան» խմբագրություն

ԲԱՆ

«Վերծանութիւն է մասն քերթածաց»:

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

Վերծանութիւնն «գիտութիւն» ասի, իսկ քերականացն՝ մասնաւոր գիտութիւն, զի աստուծոյ գիտութիւնն միայն է ընդհանուր, իսկ մարդկային գիտելս ամենայն մասնաւոր է՝ շարագրածաց և ժամանա[կա]գրածաց։

ԲԱՆ

«Կամ շարագրածացն անվթար յառաջբերութիւն»:

(Սույն աշխ., էջ 75—76)։

Կիլիկյան խմբագրություն

ԲԱՆ

«է մասն քերթածաց և անվթար յառաջաբերութիւն»:

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

Վերծանութիւնն գիտութիւն, և քերականաց մասնական գիտութիւն. զի աստուծոյ գիտութիւն միայն է ընդհանուր. և մարդկային գիտելս ամենայնն մասնաւոր շարագրածաց ժամանակագրաց»։

(Ձեռ. № 2283, թ. 5ա)։

Ինչպես այս հատվածի տեքստային առնչություններից ակներև բացորոշությամբ պարզվում է՝ կիլիկյան խմբագրությունը, «գրաբարյան» խմբագրության հարաբերությամբ, իբրև մեկնվող մեկ ասույթ է ներկայացրել առանձին մեկնաբանությունների կարոտ երկու ինքնակա հարցադրումները, իսկ իբրև «մեկնութիւն» ներկայացրած իր ընթերցումը, նույնական լինելով «գրաբարյանի» հետ, առնչվում է բերված ասույթի միայն առաջին մասի հարցադրմանը, մինչդեռ երկրորդ մասի հարցադրումը («անվթար յառաջբերութիւն») կարոտ է առանձին մեկնաբանության, որ և միանգամայն ճիշտ տալիս է միայն գրաբարյան խմբագրությունը։ Ի դեպ՝ անհրաժեշտ է նշել, որ հենց այս կարգի շեղումներն ու «նորամուծումները» մեզ համար հիմք և նախադրյալ

*են ծառայում այս երկու խմբագրություններից մեկնումեկի առաջնայնությունը և հարազատությունը բնագրագիտական ճշտությամբ լուծելու տեսակետից, որովհետև հենց դրանք էլ մատնում են աղերսների բնույթն ու դրդապատճառները։*

*Քննական մեր այս համեմատությունից հետևում է, որ գրաբարյան խմբագրությունը իր մեկնվող («բան») և մեկնող («մեկնութիւն») ընթերցումների հարաբերությամբ միանգամայն օրինաչափ է՝ կանոնավոր, դրանց հաջորդականության կուռ տրամաբանությամբ հիմնավորված, իսկ կիլիկյան խմբագրությունը ակնբախ է իր անհարիր ընթերցումներով։*

*2. Բայց և հակառակ երևույթն ենք տեսնում կիլիկյան խմբագրության ընթերցումներում, երբ իբրև բնաբան ծառայող Թրակացու ասույթները, «գրաբարյան» խմբագրության հարաբերությամբ, ոչ թե միացվում են, այլ մասնատվում և տեղաբաշխվում են դրանց վերաբերող մեկնության տարբեր մասերում՝ կազմելով առանձին բնաբաններ այդ մասնատված մեկնության յուրաքանչյուր հատվածի համար։ Բավարարվենք միայն մեկ փաստի ցուցադրումով։*

«Գրաբարյան» խմբագրություն

*ԲԱՆ*

*«Կէտ է տրամախոհութեան յանգեցելոյ նշան.* և միջակ՝ յոգի սակս ընդունելոյ»:

*ՄԵԿՆՈՒԹԻՒՆ*

*Տրամախոհութիւն բաժանումն իմաստից է, և աւարտեալ կէտն վճար և հանգիստ է բանին։ Եւ յորժամ զայս երեք կէտս դնես՝ նա՛ կատարեցաւ իմաստական բանն, որպէս և է՛, և սահմանեցաւ հանգիստն*,* որ և առնու հոգի, այսինքն՝ շունչ ըստ աւրինի ճանապարհորդաց, որ նստին և հանգիստ առնուն. նոյնպէս և դու ի բանն յոր և լինես՝ ի կատարմանն հանգի՛ր և նստո՛ զկնտկտոց լեզուիդ՝ շունչ առնելով և հոգի: Եւ բանն վճարի ութ մասամբքն սահմանեալ կիսաշնչաւքն»**:

*(Նույն աշխ., էջ 81)։*

Կիլիկյան խմբագրություն

*ԲԱՆ*

*Կէտ է տրամախոհութեան յանգեցելոյ նշան»։*

*ՄԵԿՆՈՒԹԻՒՆ*

*Տրամախոհութիւն բաժանումն իմաստից է, ու աւարտեալ կէտն վճարուն կէտն է, ու երբ զայս երեք կէտս դնես, դու զիմաստական բանն յոր և լինիս վճարես և այնես տուն*։*

*ԲԱՆ*

«Եւ միջակ նշան յոգի սակս ընդունելոյ»:

*ՄԵԿՆՈՒԹԻՒՆ*

Որ հոգի առնու, այսինքն՝ շունչ ըստ աւրինակի ճանապարհորդի, որ նստի և հանգիստ առնու, նոյնպէս և դու ի բանն, որ լինիս, շունչ ու հոգի առնուս, ու բանն անկտուր մը[ն]ա կիսաշնչիւն»**: *(Ձեռ. № 2283, թ. 7բ)։*

*3. Կիլիկյան խմբագրությունը դրսևորում է մի այլ շեղում ևս՝ «գրաբարյան» խմբագրության նկատմամբ, որը պակաս ուշագրավ չէ նրա առանձնահատկությունների ուրվագծումը ամբողջացնելու տեսակետից։ Այդ խմբագրության հեղինակը երբեմն գայթակղություն է հանդես բերում նաև այլ կարգի փոփոխություններ մտցնելու առումով՝ իրեն հիմք ծառայած բնագրի նկատմամբ։ Այսպես, հաջորդ բնաբան-ասույթը տեղաշարժելով բերում է առաջ և միացնում նախընթաց մեկնությանը՝ խախտելով մեկնվողի և մեկնողի տեքստային հերթագայությունը։ Այս փաստը արդեն կամայականության բացահայտ դրսևորում է, որը մեծապես արժեքազրկում է կիլիկյան խմբագրության հավաստիությունը։*

«Գրաբարյան» խմբագրություն

*ԲԱՆ*

*«Ըստ առոգանութեանցն,* ըստ տասանց արուեստիցն»:

Կիլիկյան խմբագրություն

*ԲԱՆ*

*«Ըստ առոգանութեանցն»։*

| | |
|---|---|
| ՄԵԿՆՈՒԹԻՒՆ | ՄԵԿՆՈՒԹԻՒՆ |
| *Եւ ահա աստ պարզէ զվերին յիշեալ ենթադատութիւնն, որ դատես և պարզես զբանն ո՛ւմ որ լինի, և բաժանես ըստ մարդոյն ոճոյն՝ եթէ զոռոզ և եթէ ողոք։* | Ըստ տասանց արուեստիւն: |
| ԲԱՆ | ԲԱՆ |
| *«Ըստ տրոհութեան»։* | *«Ըստ տրոհութեան»։* |
| ՄԵԿՆՈՒԹԻՒՆ | ՄԵԿՆՈՒԹԻՒՆ |
| *Որ տաս այնմ, որում և կամիս՝ ըստ ոճոյն, որպէս և վերագոյն ասացաւ։* | *Ըստ բաժանման։* |
| ԲԱՆ | ԲԱՆ |
| «Քանզի յենթադատութենէն՝ զզաւրութիւնն, իսկ յառոգանութենէն՝ զարուեստն»: | «Քանզի յենթադատութենէն զզաւրութիւն»*: |
| ՄԵԿՆՈՒԹԻՒՆ | *Մեկնութիւն* |
| *Ըստ արուեստաւոր խոհակերին, զի* խոհակերն *«մսագործ» ասի, որ իմաստութեամբ բաժանէ զոչխարին յաւդուածսն. և ամէն յաւդուած զիւր միսն ունենայ և չելնէ այնոր միսն ի յայն, կամ այնոր՝ ի յայն, և միւս անդամոյն՝ ի միւս այլ անդամն։ Այս աւրինակաւ լինի ընթերցաւղն և խաւսեցաւղն, նաև գրագիրն եւս»։* | *Ահա ազա կու պարզէ զվերի յիշեալ ենթադատութիւնն, որ դատես ու պարզես զբանն վասն ում ու լինի՝ ըստ մարդոյն ոճոյն թէ զոռոզ թէ ողոք։* |
| *(Նույն աշխ., էջ 76—77)։* | ԲԱՆ |
| | «Իսկ յառոգանութենէն զարուեստն»**: |
| | ՄԵԿՆՈՒԹԻՒՆ |
| | *Որ տաս ումն այն որպէս այլ է վերագրած։* |
| | ԲԱՆ |
| | *«Իսկ ի տրոհութենէն զպարունակ միտսն տեսանեմք»։* |
| | ՄԵԿՆՈՒԹԻՒՆ |
| | *Ըստ խելաւք խոհակերին. խոհակերն մսագործ ասէ, որ իմաստութեամբ զոչխարին զաւդուածքն, որ ամէն զօդուած զիւր միսն ունենայ, չելնէ այնոր միսն ի յայն ու այնորիգ յայնպէս բաժանես ու զրոյցն, որ չխառնես ու աւիրես զզրոյցն»։* |
| | *(Ձեռ. № 2283, թ. 5ա—բ)։* |

*Զուգադիր հատվածների ուշադիր համեմատությունը ակներև է դարձնում առնվազն երկու կարգի խմբագրական-բնագրային փոփոխություններ. կիլիկյան խմբագրությունը, «գրաբարյանի» հարաբերությամբ, ա) Թրակացու բնաբան-ասույթը յուրաքանչյուր դեպքում մասնատել է երկուսի և բ) մասնատված հարցադրումները (մեկնվող ընթերցումները) տեղաբաշխել է և հատկացրել դրանք հետընթաց մեկնություններին՝ խախտելով մեկնվող և մեկնող ընթերցումների իմաստային և տրամաբանական հաջորդականությունը, որով և ստացվել են մի շարք անհարիր զուգորդումներ։*

*Նախ՝ կիլիկյան խմբագրության հեղինակը կատարյալ անգիտություն է ցուցաբերել հենց Թրակացու ասույթների ըմբռնման մեջ, մինչդեռ «գրաբարյան» խմբագրության հեղինակը գիտակ անձնավորություն է ինչպես Թրակացու աշխատությանը՝ ամբողջությամբ վերցրած, այնպես և քերականության տեսությանը՝ իբրև ուսմունքի, այդ պատճառով էլ խորագույն հմտություն է դրսևորում և՛ մեջբերումներում, և՛ մեկնություններում, որոնց համապատասխանությունը տարակույսի նշույլ անգամ չի թողնում։ Այսպես, կիլիկյան խմբագրության հեղինակը, անգիտանալով, որ «ըստ առոգանութեանցն, ըստ տա-*

սանցն արուեստից» ասույթը **բացառապես** Թրակացու աշխատությունից քաղված ամբողջական մեջբերում է[169], բռնադատաբար երկատում է այն՝ դրա առաջին մասը («ըստ առոգանութեանցն») ներկայացնելով իբրև Թրակացու մեկնվող ասույթ («բան»), իսկ երկրորդ մասը («ըստ տասանց արուեստին»)՝ որպես իր սեփական մեկնություն...: Սա արդեն անթույլատրելի մեղանչում է՝ բնագրագիտական տեսակետից, որպիսին Վարդան Արևելցու նման բազմահմուտ գիտնականին վերագրելը անհեթեթություն կլիներ, մանավանդ որ «գրաբարյան» խմբագրությունում ունենք դրանց ճիշտ ընթերցումը:

Երկրորդ անհարիր կապակցությունը, որ կազմել է կիլիկյան խմբագրության հեղինակը Թրակացու ասույթի և այն բացատրող «մեկնութեան» միջև՝ հետևյալն է. «Ըստ առոգանութեանցն, ըստ տասանց արուեստից» ասույթի վարդանյան մեկնությունը («Եւ ահա ասէ պարզէ...») հատկացրել է հետընթաց ասույթի առաջին մասին («Քանզի յնթադատութենէն՝ զզաւրութիւնն...»), իսկ նույն ասույթի երկրորդ մասի համար իբրև մեկնություն («Որ տաս ումն այն որպէս այլ է վերագրած...») առաջադրել է այն ընթերցումը, որը պատշաճում է և իրոք վերաբերում է բոլորովին մի այլ ասույթի («Ըստ տրոհութեան»...):

Երրորդ շփոթ ընթերցումը ակնբախ է դառնում վերջին բան-ասույթի և նրա մեկնության բռնազբոսիկ հարաբերակցությունը քննության առնելիս: Իրականում՝ «Իսկ ի տրոհութենէն զպարունակ միտսն տեսանեմք» բան-ասույթը, բնագրագիտական ճշգրտագույն ընթերցման համաձայն, պետք է տեղադրված լիներ ոչ թե վերջին «Մեկնությունից» առաջ, այլ նրանից հետո՝ որպես հաջորդ մեկնության համար բան-ասույթ. ընդսմին ճիշտ այնպէս՝ ինչպես «գրաբարյան» խմբագրության ընթերցումն է թելադրում: Այդ իսկ պատճառով մեկնվող ասույթի և մեկնող ընթերցման ստույգ հարաբերակցությունը կարելի է վերականգնել՝ միայն ուղեցույց ընդունելով «գրաբարյան» ընթերցումը: Իսկ դա, իր հերթին, նշանակում է, որ Վարդան Արևելցու գրչին հարազատ բնագիրը միայն ու միայն «գրաբարյան» խմբագրությունն է, մինչդեռ կիլիկյան խմբագրության բնագիրը վերաձևված է «գրաբարյանի» հիման վրա, ընդսմին երբեմն առաջադրելով նաև անհարիր ընթերցումներ, որոնք, բնականաբար, միայն արժեքազրկում են բնագրական այդ տարբերակը:

4. Քննական համեմատությունը ցույց է տալիս, որ կիլիկյան խմբագրությունը՝ «գրաբարյանի» հարաբերությամբ, բնագրական այնպիսի ընթերցում ունի, որը, տվյալ դեպքում, հույժ կարևոր նշանակություն է ստանում՝ բնագրագիտական վերլուծության ընթացքում մեր եզրահանգումների ստուգությունը հաստատելու իմաստով: Այսպես, կիլիկյան խմբագրությունում, «գրաբարյանի» համեմատությամբ, հետընթաց բան-ասույթը տեղաշարժմամբ բերված է առաջ՝ ներկայացնելով այն նախորդ մեկնության միայն **վերջին երեք տողերի համար** որպես մեկնվող ասույթ: Սակայն նման զուգորդումը «մեկնության» հետ՝ իմաստային ու տրամաբանական առումներով միանգամայն անհեթեթ է: Համեմատի՛ր.

| «Գրաբարյան» խմբագրություն | Կիլիկյան խմբագրություն |
| --- | --- |
| ԲԱՆ | ԲԱՆ |
| «Կէտ է տրամախոհութեան յանգեցելոյ նշան. և միջակ՝ յոգի սակս ընդունելոյ»: | «Եւ ստորակէտ է տրամախոհին չև ևս յանգեցելոյ, այլ ևս կարաւտացելոյ նշանի»: |

169 Տե՛ս Ն. Ադոնց, նշված աշխատ., էջ 38:

Մ Ե Կ Ն Ո Ւ Թ Ի Ւ Ն

*Տրամախոհութիւն բաժանումն իմաստից է...* Իսկ ստորակէտ է, որ բանն, վասն որոյ է՝ չյայտնի, որպէս որ ասես ընդ մարդ, թէ՝ գնա՛, և չասես, թէ՝ ուր, և կամ ասես, թէ՝ առ, և չյայտնես, թէ՝ զի՛նչ առնու:

Բ Ա Ն

«Եւ ստորակէտ է տրամախոհին չև ևս յանգեցելոյ, այլ ա՛յլ ևս կարաւտացելոյ նշանի»:

*(Նույն աշխ., էջ 81—82)։*

Մ Ե Կ Ն Ո Ւ Թ Ի Ւ Ն

Ստորագէտ է՝ որ բանին վասն յումն չյայտնի, զերդ երբ ասես թէ ու չասես, թէ ուր, կամ ասես թէ առ ու չասես, թէ ի՞նչ առնու:

*(Ձեռ. № 2283, թ. 7ա։*

*5. Առանձին դեպքերում կիլիկյան խմբագրությունը իր հիմքի նկատմամբ, սկզբում բաց թողնելով առանձին տողեր, համընթաց գնում է «գրաբարյան» խմբագրության հետ, իսկ այնուհետև հետընթաց բան-ասույթը առաջ բերելով վերաձևում է իբրև նոր բան-ասույթ այն տողերի համար, որ սկզբում բաց էր թողել. ընդամին այդ բան-ասույթը, որ գրաբարյանի հարաբերությամբ հետընթաց ընթերցում է հանդիսանում, ոչ թե լրիվ է բերվել, այլ մասամբ՝ տեղաբաշխելով նրա մյուս հատվածները գրաբարյանի նկատմամբ տարբեր հարաբերականությամբ։*

«Գրաբարյան» խմբագրություն

Բ Ա Ն

*«Ոլորակ է բացագանչութիւն պատկանաւոր ձայնի»։*

Մ Ե Կ Ն Ո Ւ Թ Ի Ւ Ն

Ոլորակ այս երեք առոգանութիւնքս են՝ շեշտն, բութն, պարոյկն: Զի թէ ուժով վերացուցանել կամիս զձայնն՝ նա զշեշտն ի դէպ է դնել. և թէ ճարթ՝ նա զբութն. և թէ ոլորակես զձայնն՝ նա զպարոյկն: *Իսկ բացականչութիւնն հեռաձայնութիւն ասի, որպէս որ ասես, թէ «Արի»՝ գանչ կամ կանչ է, զի ա՛յլ ուղղորդ է* կանչելն, *քան* զգանչելն: *Եւ պատկանաւոր ասելն «պատեհաւոր» ասի. և պատկանաւոր ձայնն մարդոյն միայն է, որ բանական արուեստի ուղղէ զձայնն։*

Բ Ա Ն

*«Թէ ըստ վերսաստութեան՝ շեշտին և թէ ըստ հարթութեան՝ բթին, և թէ ըստ պարբեկութեան՝ պարուկան»։*

Մ Ե Կ Ն Ո Ւ Թ Ի Ւ Ն

Հաւասարն է՝ *որ ոչ երկար լինի և ոչ սուղ. բայց ի հաւասարին զբութն այլ պիտի դնել:* Այլ պարբեկելն *«շրջադարձել» ասէ, զի յորժամ զձայնն ի վեր տանիս և կորես ...*

*(Նույն աշխ., էջ 79—80)։*

Կիլիկյան խմբագրություն

Բ Ա Ն

*«Ոլորակ է բացականչութիւն պատկա[նա]ւոր ձայնի»։*

Մ Ե Կ Ն Ո Ւ Թ Ի Ւ Ն

*Բացագանչութիւնն հեռաձայնութիւն ասի զեդ երբ ասէ, թէ արի՝ գանչ է, գանչէն է ըղորդ, չէ կանչէն. պատկանաւոր ասել՝ պատեհաւոր ասի և պատեհաւոր ձայնն մարդոյն միայն է, որ բնաւորութեամբ արուեստաւորի ուղղէ զձայնն։*

Բ Ա Ն

*«Թէ ըստ վերսաստութեան շեշտին»։*

Մ Ե Կ Ն Ո Ւ Թ Ի Ւ Ն

«Ոլորակք այս երեք առոքանութիւնքս են. շեշտն, բութ, պարոյկն, ամ թե ուժով ի վեր կամիս տանիլ զձայնն, նա ըզշեշտն պիտին դնել և թէ ճարթ, որ է հաւասարն, նա զբութն, և թէ ոլորակես զձայնն նա զպարոյկն:

Բ Ա Ն

*«Ըստ հարթութեան բթին»։*

Մ Ե Կ Ն Ո Ւ Թ Ի Ւ Ն

*Հաւասարն է, որ ոչ երկար լինի և ոչ սուղ. Նա հաւասար է, ու ի հաւասարն զբութն պիտին դնել։*

Բ Ա Ն

*«Թէ ըստ պարբեկութեան ձայնի պարուկան»։*

Մ Ե Կ Ն Ո Ւ Թ Ի Ւ Ն

*Պարբեկելն շրջադարձեալ ասէ, զի երբ զձայնն ի վեր տանիս...։*

*(Ձեռ. № 2283, թ. 6ա—բ)։*

*6. Իբրև հավելվածեպ ընթերցումներ կիլիկյան խմբագրությունը տալիս է նաև այնպիսիք, որոնք «գրաբարյան» խմբագրության նկատմամբ տարբեր ընթերցումների պատրանք են ստեղծում, բայց և ըստ էության ոչ մի նոր բան չեն ավելացնում «գրաբարյանի» ստույգ ընթերցումներին, այլ պարզապես աղավաղում են վարդանյան մեկնության բնագիրը։ Ասվածի ստուգության համար բերենք միայն մի օրինակ.*

«Գրաբարյան» խմբագրություն

*ԲԱՆ*

«Տառ է անմարմին՝ որպէս զհոգի, և գիր է՝ որպէս զմարմին»։

*ՄԵԿՆՈՒԹԻՒՆ*

*Իսկ բազմութիւն հայկական գրոյս երկու պատճառս ունի. առաջինն՝ զազգացն զԿորճայսն <է>, այսինքն՝ զբազմութիւն հայոց լեզուիս զծռութիւնն և զթոթովախաւսութիւն գնչատացն, երկրորդ պատճառն՝ լեզուիս հարստութիւն։*

*ԲԱՆ*

«Գիր է երեսուն և վեց՝ յայբէ մինչև քէ. և գիր ասի, վասն զի ճեռելով իմն զաղափարի»։

*(Նույն աշխ., էջ 84)։*

Կիլիկյան խմբագրություն

*ԲԱՆ*

«Գիր է երեսուն և վեց յայբէ մինչև քէ»։

*ՄԵԿՆՈՒԹԻՒՆ*

Տառ է անմարմին բանի պէս, որպէս զհոգի, և գիր մարմնոյ պէս, *և բազմութիւն հայկական գրիս և երկու պատճառ ունի. առաջին ազգացն Կարճեայսն, այսինքն՝ զբազմութիւն հայ լեզուացն՝ զծռութիւնն, երկրորդ զլեզուիս հարըստութիւնն։*

*ԲԱՆ*

«Եւ գիր ասի, վասն զի ճեռելով իմն զաղափարի»։

*ՄԵԿՆՈՒԹԻՒՆ*

*Գրելն քերել ասի, այսինքն՝ որ ծայրն գըրչին քերէ զգրելին և ապա նկարէ»։*

*(Ձեռ. № 2283, թ. 8ա—բ)։*

*Կիլիկյան խմբագրության հեղինակը, ինչպես տեսնում ենք, անգիտանալով, որ «Տառ է անմարմին՝ որպէս զհոգին, և գիր է՝ որպէս զմարմին» ասույթը Թրակացու հայերեն թարգմանությունից քաղված խոսք է, ներկայացրել է իբրև մեկնություն..., այդ պատճառով էլ լեզվա-ոճական փոփոխության է ենթարկել ու ձուլել հենց այն մեկնության հետ, որին իբրև բան-ասույթ Վարդան Արևելցին առաջադրել է սույն քաղվածքը...։ Իսկ գրաբարյան խմբագրության հարաբերությամբ տարընթերցում ներկայացնող այս մեկնության համար կիլիկյան խմբագրությունը իբրև բան-ասույթ առաջադրել է հետընթաց բանասույթի առաջին մասը, իսկ երկրորդ մասը վերապահել է հաջորդ մեկնությանը...*

Քանի որ բնագրագիտական վերլուծությունը մեզ բերեց այն հիմնավոր և աներկբայելի հետևության, որ քննության առնված այս երկու խմբագրություններից ստուգագույնը, հետևաբար և հեղինակայինը վարդանյան մեկնության հանդիսանում է «գրաբարյան» խմբագրությունը, ապա բնագրի վերականգնողական աշխատանքները տարանք հենց այդ խմբագրության ձեռագրական տարբերակների քննական համեմատության ընդգրկմամբ, և դրանց տարընթերցումների լեզվա-քերականական համադրումով պատրաստեցինք Վարդան Արևելցու «Մեկնութիւն քերականի» երկի քննական բնագիրը։

*Ինչ վերաբերում է կիլիկյան խմբագրությանը, ապա վերջինիս ընդգրկումը քննական հրատարակության համար մեր պատրաստած բնագրի վերականգնողական աշխատանքներում անհնարին եղավ՝ մյուս ձեռագրական տարբերակների համեմատությամբ նրա մի շարք առանձնահատկությունների ան-*

հարիրության պատճառով։ Իսկ հավելվածի ձևով դրա հրատարակումը աննպատակահարմար գտանք, քանի որ այն առանձին արժեք չի ներկայացնում։

**Բ. «Մեկնութիւն քերականի» երկում օգտագործված աղբյուրները։—** Հայ քերականագիտական մտքի պատմության համար կարևոր նշանակություն ունի այն հարցի լուսաբանումն ու գիտական որոշումը, թե Վարդան Արևելցու սույն երկը, իր բնույթով ու կառուցվածքային առանձնահատկություններով, ի՞նչ տեղ է գրավում իր նախընթաց մեկնողական երկերի նկատմամբ իբրև դասագիրք և քերականական աշխատություն առհասարակ։

Նման հարցադրմանը պատասխանելու համար, բնականաբար, անհրաժեշտ է քննական համեմատության մեթոդով զուգահեռներ անցկացնել ինչպես նախընթաց քերականական մեկնությունների, այնպես և Վարդան Արևելցու սույն աշխատության միջև։

Նշենք սակայն, որ Վարդան Արևելցու քերականական այս երկի աղբյուրների բացահայտման ուղղությամբ մեր մատենագրության մեջ առհասարակ և քերականագիտական հետազոտություններում՝ մասնավորապես, առ այսօր քննություն չի կատարվել։ Մինչդեռ աղբյուրագիտական հետախուզումը սույն Մեկնության (ինչպես և ամե՛ն մի բնագրի) առանձնահատուկ նշանակություն ունի՝ նրա բնագիրը հրատարակության հանձնելիս։

Նախընթաց քերականական մեկնություններից մեզ են հասել, իբրև առանձին ամբողջական բնագրական միավորներ, միայն երկու աշխատություն՝ ինչպես V—VI դարերի խոշոր գիտնական՝ փիլիսոփա և քերական Դավթի, այնպես և XI դարի հասարակական կարկառուն դեմք հանդիսացած և հելլենիստական կուլտուրայի ականավոր ներկայացուցիչ ճանաչված Մագիստրոսի քերականական մեկնությունները։ Ընդմին եթե առաջինի աշխատությունը սոսկ իր՝ հեղինակի սեփական գրչին պատկանած երկասիրություն է, ապա երկրորդի մեկնությունը՝ նախընթաց շրջանի բոլոր քերական մեկնիչների աշխատությունների համադրումն է բանաքաղային սկզբունքով՝ մասամբ նաև սեփական հայացքների ու հարցադրումների ընդելուզմամբ։ Հետևաբար՝ նրանում այս կամ այն չափով ներկայացված են, բացի Դավթի աշխատությունից, նաև Անանունի, Մովսես Քերդողի, Ստեփանոս Սյունեցու քերականական մեկնությունները։ Դավթի և Մագիստրոսի աշխատությունների հետ մեր կատարած մանրակրկիտ ու քննախույզ համեմատությամբ պարզեցինք Վարդան Արևելցու «Մեկնութիւն քերականի» բնագրի հետևյալ ընդհանրություններն ու առանձնահատկությունները.

ա) Ինչպես Վարդան Արևելցու, այնպես և Դավթի ու Մագիստրոսի քերականական աշխատությունները, իրենց մեկնողական խոսքով, հավասարապես ուղղված են մեր թվականությունից առաջ II դարում ապրած հույն նշանավոր քերական Դիոնիսիոս Թրակացու աշխատության հայերեն թարգմանության մեջ արծարծված դրույթների լուսաբանմանը՝ դասական հայերենի իրողությունների քննությամբ։

բ) Նշված երեք աշխատություններն էլ, իրենց նպատակադրումով, ոչ թե սոսկ հայեցողական քննությամբ շարադրված գիտական հետազոտություններ են՝ դրանց հեղինակների ակադեմիական հետաքրքրություններին հագուրդ տվող, այլ՝ ուսուցողական ձեռնարկ-դասագրքեր են՝ իրենց ժամանակի գիտական պահանջներին համապատասխան։

*գ) Իբրև առավել անմիջական ընդհանրություն՝ Վարդան Արևելցին իր քերականական Մեկնության մեջ զգալի չափով օգտվել է Մագիստրոսի աշխատությունից՝ նրանում պարփակված Դավթի, Անանունի, Մովսեսի, Ստ. Սյունեցու քերականական այս կամ այն առանձին դրույթների վերարծարծմամբ ու խորացմամբ։*

*Հարկ է նշել, որ հարաբերականորեն առավել լայն չափով Վարդան Արևելցին օգտվել է Դավթի դրույթներից՝ հատկապես քերականական ուսմունքի տարբեր կարգերի տեսությանը վերաբերող հարցերում։ Ընդսմին՝ մեր քննությամբ պարզված ընդհանրությունների և աղերսների հանրագումարային հաշվեկշիռը ակնբախորեն ցույց է տալիս, որ Վարդան Արևելցին քերականական իր մեկնությունը շարադրելիս Դավթից օգտվել է ոչ թե անմիջականորեն, այլ Մագիստրոսի աշխատության միջնորդությամբ։ Ասվածի հավաստիության համար հաճախադեպ փաստերից բերենք թեկուզ և մեկ ապացույց. բոլոր ա՛յն դեպքերում, երբ Վարդան Արևելցին օգտվում է Դավթի քերականական դրույթներից այս կամ այն քերականական կարգը մեկնելիս, Դավթի ասույթների շարադրանքի ընթացքին լիովին և հավատարմորեն չի հետևում, այլ ներառնում է նաև այն դրույթներն ու հարցադրումները, որ արտահայտել են իրենց աշխատություններում տարբեր մեկնիչներ քերականական տվյալ կարգի վերաբերյալ, ըստ որում, հաճախ նաև* հասկացությունների ու ըմբռնումների ճիշտ այն ծավալային ոլորտով, ինչպիսին գտնում ենք Մագիստրոսի աշխատության մեջ: *Դիցուք՝ համեմատենք հետևյալ հատվածները.*

**Վարդան Արևելցի**

«Առոգանութիւնն՝ առովասութիւն *ասի և դարձեալ կոչի «արուեստ» և «զարդ» բանի, զի որպէս ամենայն որ ի ներքոյ երկնից բովանդակի ի տասն ստորոգութիւնս, նոյնպէս և տասն են, որով բաժանին և գեղեցկանան ամենայն բանիւ բովանդակեալ իմաստք։ Իսկ ասելն, թէ առոգանութիւնք են տասն՝ զքանիս սորա յայտնեաց հանդերձ անուամբք. իսկ զզաւրութիւնս սորա ես բացայայտեցից։*

*Արդ, ասի շեշտ՝ սուր, բութ՝ ծանր, կամ խոնարհ կամ մանր, պարոյկ՝ շուրջառ, երկարն՝ երկայն, սուղ՝ կարճ կամ սոսկ, թաւ՝ խոշոր կամ թանձր, սոսկ՝ ողորկ կամ լեշկ, ապաթարց՝ առանց ենթամնայ, ներքսագրական, ստորատ, ներքևահատ։*

Եւ զի՞ ասաց առոգանութիւնք սեռականք են երեք, զոր պարտ էր չորս ասել. զի յառաջիկայս բաժանի ոլորակն ի շեշտ և ի բութ և ի պարոյկ, ամանակն՝ յերկար և ի սուղ, հագագն՝ ի թաւ և ի սոսկ. կիրքն՝ յենթամնայ և յապաթարց և ի ստորատ:

*Բայց* ենթամնայդ *և* ստորատդ *հակառակ են միմեանց, զի ենթամնայդ խառնիչ է բանի, իբր թէ՝ Գամաղիէլ* աւրէնսուսոյց. *իսկ ստորատդ ի բաժանել զսոյն, թէ* աւրէնս,ուսոյց:

*Իսկ* ապաթարցդ *եղեալ ի տեղի նշան՝ վասն ունելոյ զձայնաւորն առ ի պարզ ասելոյ զբանն, որպէս անունդ յայտնէ՝ հանել այբի և դնել զդա ի վերայ տեղւոյն՝ ասասցես ապադարձ։*

**Մագիստրոս**

Առոգանութիւնդ առասանութիւն ասի. և սեռական վասն այնորիկ ասին երեքդ, զոր պարտ է ասել չորս, զի յառաջիկայս բաժանի ոլորակն ի շեշտ և ի բութ, և ի պարոյկ: Ամանակն յերկար և ի սուղ. հագագն՝ ի թաւ և ի սոսկ. կիրդ՝ յենթամնայ և յապաթարց և ի ստորատ: *Եւ ենթամնայտ ի ստորատդ՝ հակառակ են միմեանց։ Ենթամնայդ ի խառնել զբանդ, իբր թէ աւրէնսուսոյց. իսկ ստորատդ ի բաժանել զնոյն. իսկ ապաթարցդ եղեալ՝ լինի ի նշան վասն ունելոյ զձայնաւորն առ ի պարզ աւելոյ զբանն, առակ իմն հանեալ այբի և դնելոյ զդայ ի վերայ տեղոյն ասասցես ապաթարց։*

*Իսկ ասելն եթէ առոգանութիւնք են տասն, զքանիաւնութիւն սորա յայտնեաց հանդերձ անուամբք։ Իսկ զզաւրութիւն սորա ես բացայայտեցից։ Ասի շեշտ, սուր, բութ, ծանր, պարոյկ, շուրջառ, երկար, երկայն, սուղ, կարճ, թաւ, խոշոր, սոսկ, ողորկ կամ լեշկ, ապաթարց՝ առանց, ենթամնայ՝ ներքսագրական, ստորատ՝ ներքևահատ։ Իսկ ասելն թէ առոգանութիւնք են սեռականք երեք, այսինքն առովասութիւնք ազգականք. և առովասացութիւնք վասն այնորիկ ասէ, սակս այս և անդր դառնալոյ բանին և զբազումս ամփոփելոյ։ Իսկ ազգական վասն այնորիկ ասէ, զի ազգ ի բազումս հատանի՝ յեղբայր, ի քոյր և ի քեռի կամ որք մի անգամ ասին յարենէ քումմէ, այնպէս և սոքա.* և բաժանին յերիս տեսակս այս–

*Եւ ասելն՝ թէ առոգանութիւնք են սեռականք երեք, այսինքն՝ առովասութիւնք ազգականք. առովասութիւնք վասն այնորիկ ասի՝ սակս այսր և անդր դառնալոյ բանին և զբազումս ամփոփելոյ։ Իսկ* ազգական *վասն այնորիկ ասի, զի ազգ ի բազումս հատանի՝ ի հայր և ի մայր, յեղբայր և ի քոյր և կամ որք մի անգամ ասին յարենէ քումմէ, այնպէս և սոքա։*

*(Սույն աշխ., էջ 156—157)։*

պէս՝ ոլորակ անունն բաժանի ի չեշտ և ի բութ և ի պարոյկ...»։

*Մագիստրոս, Ձեռ. № 3917, թթ. 121բ—122բ։*

*Ընդգծված տողերը պատկանում են Դավթի աշխատության տողերին, իսկ մնացածը՝ Սյունեցու աշխատությանը։ Կարո՞ղ ենք ենթադրել, որ Վարդան Արևելցին իր Մեկնությունը գրելիս ուղղակիորեն օգտվել է և՛ Դավթի, և՛ Սյունեցու աշխատություններից։ Ո՛չ. դա բացառված է, քանի որ Վարդան Արևելցին նշված երկու հեղինակներից էլ շրջասույթային ձևով վերաշարադրում է նույն մտքերը՝ ընդգրկման այն նույն պայմանականությամբ, որ գտնում ենք Մագիստրոսի աշխատությունում։ Անշուշտ, մտքերի վերադասավորումը, որ նկատելի է Վարդան Արևելցու Մեկնության հատվածում՝ Մագիստրոսինի հարաբերությամբ, ինքնին չի նսեմացնում կամ թուլացնում արված պնդումի հավաստիությունը, քանի որ, ինչպես այս ժամանակաշրջանի երկերի բնագրագիտական վերլուծությունից հայտնի է, միջնադարի մեր մատենագրության մեջ ընդունված գործառություն (պրակտիկա) է եղել բնագրական հետևյալ սկզբունքը. աղբյուրներից քաղված առանձին հատվածներ վերաշարադրելիս դրանք ներկայացվում են ոչ թե նախադասությունների ու պարբերույթների բացարձակ հարազատությամբ՝ դրանց միևնույն հաջորդականությամբ (այսինքն՝ ճիշտ այնպես, ինչպես ընդունված է ժամանակակից գիտական գրականության մեջ), այլ՝ ըստ օգտվող հեղինակի սեփական հայեցողության՝ իր ուրույն մոտեցման ու տրամաբանական վերլուծության հենքի։ Ի դեպ՝ պարագան նույնն է նաև այն դեպքերում, երբ Վարդան Արևելցին օգտվում է Անանունից, Մովսեսից, Ստեփանոս Սյունեցուց և ուրիշներից։ Իսկ այս նշանակում է, որ Վարդան Արևելցին իր Մեկնության աղբյուրների համար շրջանառության մեջ է դրել ոչ թե համապատասխան հեղինակների աշխատություններն ուղղակիորեն, այլ* ձեռքի տակ է ունեցել քերականական այդ երկերն իր մեջ պարփակող Մագիստրոսի աշխատությունը, որից և օգտվել է նա։

*դ) Վարդան Արևելցին մասնակի դեպքերում օգտվել է նաև Համամ Արևելցուց, ընդմին առավելապես ակնարկային ձևով։ Ինչպես քննական բանասիրությունը պարզել է, Մագիստրոսը իր ձեռքի տակ չի ունեցել Համամ Արևելցու աշխատությունը*[170]*, այլ միայն հետագայում՝ Հովհաննես Երզնկացին (Պլուզը) իր աշխատության մեջ ներձուլված ձևով մեկնել է այն, որը և հնարավորություն է ընձեռել բազմավաստակ հայագետ Ն. Ադոնցին առանձնացնելու և իբրև Համամ Արևելցու աշխատություն ներկայացնելու իր մեծարժեք երկասիրության մեջ*[171]*։ Սակայն մեր քննությունից աներկբայորեն պարզվում*

---

[170] *Տե՛ս* Ն. Ադոնց, *նշված աշխատ., Ներածություն, էջ CXVI—CXVII։*

[171] *Տե՛ս նույն տեղում, էջ CXVI—CXVII և Բնագիրը՝ էջ 253—285։*

*Հովհաննես Երզնկացի Պլուզը օգտագործած այս աղբյուրի մասին իր Քերականական երկասիրության առաջաբանում գրում է. «Գտայ և յանապատն Դերջնայ զՀամամայ Արևելցին վարդապետի մեկնութիւնն...» (Ձեռ. № 2296, թթ. 39բ—33ա),*

*է, որ Վարդան Արևելցին, դեռևս Հովհաննես Երզնկացուց առաջ, իր ձեռքի տակ է ունեցել Համամ Արևելցու քերականական մեկնությունը և օգտվել է նրանից։ Մեր այս պնդման ապացուցման համար զուգադրենք հետևյալ երկու առնչակցությունները.*

| Վարդան Արևելցի | Համամ Արևելցի |
| --- | --- |
| 1. *«Յորժամ քերթողաբար խաւսիս՝* պանու-ճազարդ, *և ոչ՝ գեղջկապէս, որպէս աւրինակն զոր եդ առաջի...»։* (*Սույն աշխ., էջ 142*)։ | *«Եւ քերդութեան, որպէս* վայելուչ յեղանակաւ *զայս բերեալսն ցուցանէ պարզ յարացուցիւք...»։* (Ն. Ադոնց, *էջ 271*)։ |
| 2. *«... Զի զգէմքն չյայտնէ ընդունելութիւնն և ոչ զխոնարհմունսն, ապա այլքն հասարակ է։ Ընդունելութիւն է՝* շինեալ, արարեալ, բերեալ...»: (*Սույն աշխ., էջ 131*)։ | *«Այսպէս, ընդունելութիւն ոչ զդէմս և ոչ զթուութիւն իւիք նշանակէ, որպէս յորժամ ասես՝* շինեալ, տարեալ, բերեալ, գրեալ, *ոչ յայտնէ զդէմս, յորմէ արդեաւք իցէ շինեալ, բերեալ կամ տարեալ»։* (Ն. Ադոնց, *էջ 265*)։ |

*Բնագրական ընդհանրությունը, որ ակնբախ է բերված նմուշներում, տարակույս չի թողնում հաստատապես պնդելու, որ Վարդան Արևելցին իր Մեկնությունը գրելիս ձեռքի տակ իբրև սկզբնաղբյուր ունեցել է նաև Համամ Արևելցու քերականական երկը, որից և, ըստ անհրաժեշտության, օգտվել է, ընդ-ամին այս դեպքում ոչ թե Մագիստրոսի աշխատության միջնորդությամբ, այլ* անմիջականորեն *Համամ Արևելցու երկից։*

*Այսպես, ուրեմն, վերը նշված առնչակցություններով էլ սպառվում են, մի կողմից՝ Վարդան Արևելցու քերականական մեկնության, մյուս կողմից՝ Մագիստրոսի և Համամ Արևելցու քերականական աշխատություններում առկա հիմնական ընդհանրությունները։*

*Սակայն Վարդան Արևելցու քերականական երկի համակողմանի բնութագրման համար առավել կարևոր է այն առանձնահատկությունների բացահայտումը, որոնցով նա հակադրվում է ինչպես Դավթի և Համամ Արևելցու, այնպես և Մագիստրոսի քերականական մեկնություններին։*

*ա) Ամենաբնութագրականն այն է, որ Վարդան Արևելցին, քերականական հայացքների իր շարադրանքում, լեզվա-ոճական արտահայտչականությամբ տրամագծորեն տարբերվում է և՛ Դավթից, Անանունից, Մովսեսից, Ստ. Սյունեցուց, և՛ Մագիստրոսից ու Համամ Արևելցուց։ Վերջիններիս լեզուն եթե գերազանցապես հունաբան հայերենով և խրթին գրաբարով շեշտվածություն ունի, ապա Վարդան Արևելցու քերականական մեկնության լեզուն՝ վերին աստիճանի պարզեցված գրաբարի հստակություն և մատչելիություն, որը պայմանավորված է, անտարակույս, հեղինակի մտածողության առարկայականությամբ։ Այլ կերպ ասած՝ եթե Մագիստրոսը իր բանաքաղած աշխատություններից առաջադրած մեջբերումները պարզապես համադրում է հարազատությամբ՝ առանց ամենադույզն վերափոխումների, ապա Վարդան Արևելցին իր օգտագործած աղբյուրներից միայն ընդհանուր միտքն ու դրույթները վերցնելով, բայց միաժամանակ այդ դրույթների առավել մեծ խորացումով և ընդլայնումով, լեզվա-ոճական ազատ վերաշարադրումով է ներկայացնում դրանք։ Ամենայն հավանականությամբ՝ ժամանակի գիտական մտածողությունը զարգանում էր հենց այս եղանակով ու ճանապարհով. այն է՝ եղածի կամ ստեղծվածի ընդհանուր համակարգում՝ մեկնաբանման առավել ընդլայնմամբ ու*

*խորացմամբ, մինչև անգամ իմաստային երանգների ամբողջականացմամբ էր ընթանում միջնադարի գիտական մտածողությունը։*

*բ) Եթե Վարդան Արևելցին լայն աղերսներ ունի իր աղբյուրների հետ, բայց և պետք է ասել, որ նա դրանցից տարբերվում է մի կարևոր առանձնահատկությամբ, որը նրա քերականական մեկնությանը նոր արժեք է վերապահում. քերականական այս կամ այն դրույթի մեկնաբանման առթիվ Վարդան Արևելցին միաժամանակ, իբրև լեզվա-քերականական իրողությունների քննություն և ցուցադրում, ներկայացնում է կյանքից վերցրած համեմատաբար առատ նմուշներ[172], որով և քերականական նյութի մատուցումը և յուրացումը, անտարակույս, հեշտացվում են։ Իսկ այդ իր հերթին նշանակում է, որ Վարդան Արևելցու մեկնությունը, իբրև քերականական դասագիրք, մանկավարժական մեթոդիկայի առումով, նույնպես զգալի նվաճում է հանդիսանում իր նախորդների հարաբերությամբ։*

*գ) Բնութագրական է, որ երբ Վարդան Արևելցուն չեն բավարարում քերականական նույն հարցերի շուրջը իրենից առաջ հանդես եկած այս կամ այն մեկնիչի բացատրությունները, նա նոր մեկնաբանություն է առաջադրում։ Ինքնուրույնության՝ իր օգտագործած աղբյուրին ստրկամտորեն չհետևելու ցուցանիշ է և այն իրողությունը, երբ Վարդան Արևելցին մի դրույթ հիմնավորելիս կամ հաստատելիս օգտվում է իր աղբյուրից, նույն ձևով չի փաստարկում, ինչպես իր օգտագործած աղբյուրի հեղինակը։*

*դ) Ոչ միայն առանձին հարցերի վերաբերյալ քերականական նոր մեկնաբանումներ է տալիս Վարդան Արևելցին, այլև ամբողջական շարադրանք է հեղինակում քերականական այս կամ այն կարգի բնութագրման համար՝ տալով միաժամանակ քերականական այդ կարգի դրսևորման բոլոր տեսակներն ու հարացույցները։ Այդպիսիք են, օրինակ՝ «Յաղագս մակբայի», «Յաղագս ոտից» գլուխները (տե՛ս սույն աշխատությունը, էջ 140—149 և 160—163) և այլն։ Բացի նշվածից, եթե նախորդ մեկնիչները այս կամ այն չափով անդրադարձել են միջնադարի քերականագիտության ըմբռնմամբ հասկացված քերականական կարգերի մասին, ապա դրանցից և ոչ մեկը բայի խոնարհման աղյուսակի մեկնությունը չի ներկայացրել. մինչդեռ Վարդան Արևելցին իր աշխատությունը ավարտում է հենց այդ բաժնով, որը վերնագրել է՝ «Խոնարհմունք բայի» ձևակերպումով։ Ինչպես այս, այնպես և բազմաթիվ հարցադրումների արծարծումը Վարդան Արևելցու կողմից, անտարակույս, բարձրացնում են նրա մեկնության գիտական և պատմական արժեքը։*

*ե) Հովհաննես Երզնկացին (Պլուզ) ժամանակին ճիշտ է նկատել՝ նշելով, որ Մագիստրոսի աշխատության մեջ «բազումք ի մասանց բանին ոչ ունէին զմեկնութիւն»[173]։ Վարդան Արևելցու քերականական սույն երկը այս կողմով ևս լրացնում է իր նախորդի՝ Մագիստրոսի աշխատության այդ թերությունը. Թրակացու հայերեն թարգմանության բազմաթիվ քերականական դրույթներ, որ Մագիստրոսի աշխատության մեջ մեկնաբանություն չեն գտել, Վարդան Արևելցին, թեև համառոտակի, բայց և այնպես մեկնում է՝ լրացնելով այդ բացերը։ Այս իմաստով էլ Վարդան Արևելցու քննարկվող երկը, ի տարբերություն նախորդ քերական մեկնիչների աշխատությունների, առավել լիակատար բնույթ ունի։*

---

[172] *Այս փաստը նկատել է նաև պրոֆ. Գ. Ջահուկյանը, տե՛ս նրա նշված աշխատ., էջ 246։*

[173] *Մաշտոցի անվան Մատենադարան, ձեռագիր, № 2296, թ. 32բ։*



5—737

գ) Եթե Մագիստրոսը, ըստ իր օգտագործած աղբյուրների, իր բնագրի կառուցման սիստեմում Թրակացու ասույթները ոչ թե մեջբերումների ձևով իբրև «բան» առանձին-առանձին է ներկայացնում, այլ ձուլում է դրանք մեկնողական խոսքի մեջ՝ այս կամ այն դրույթի հիմնական գաղափարն արտահայտող բառ-տերմինի ընկալմամբ իր շարադրանքում, ինչպես և «արուեստուրն ասէ» կամ պարզապէս «ասէ» բառի կամ բառակապակցության հարադրումով, ապա Վարդան Արևելցին Թրակացու աշխատության հայերեն թարգմանության յուրաքանչյուր պարբերույթ, նախադասություն կամ բառակապակցություն նախապես իբրև մեջբերում չակերտների մեջ վերցրած առաջադրում է «բան»-ի հանգամանքով, ապա համապատասխանաբար մեկնում դրանք՝ զանց չառնելով Թրակացուց և ոչ մեկ ասույթ։ Հենց դա է երաշխիքը այն բանի, որ Վարդան Արևելցու քերականական աշխատությունը ամբողջական մեկնություն է Թրակացու երկի, թեև համառոտ բնույթի։ Այդ նրան հաջողվել է այն պատճառով, որ բնագրական խստագույն հետևողականությամբ՝ ասույթ առ ասույթ, նախադասություն առ նախադասություն, բառակապակցություն առ բառակապակցություն մեկնել է Թրակացուն մինչև վերջ։ Անշուշտ, պետք է կարծել, որ բնագրային կառուցվածքի նման սկզբունքը նորամուծություն չէ մեր մատենագրության մեջ. այն շատ ավելի վաղ՝ դեռևս V—VI դարերի իմաստասիրական և աստվածաբանական երկերում լայնորեն կիրառվել է, բայց քերականական մեկնողական գրականության մեջ առաջինը Վարդան Արևելցին է բնագրական կառուցվածքային նման սկզբունքի արմատավորողը։ Այս իմաստով էլ անհարիր պնդում չպետք է թվա մեր այն հավաստումը, որ արել ենք Եսայի Նչեցու քերականական մեկնության բնագրական կառուցվածքի առթիվ. վերջինս կարող էր, անկախ Վարդան Արևելցուց, կիրառել բնագրական նույն սկզբունքը, քանի որ, ինչպես ասվեց, դա մեր մատենագրության մեջ հնագույն սկզբունք է եղել. այս այսպես է և այն պատճառով, որ Եսայի Նչեցին իր օգտագործած աղբյուրներում երբեք չի առնչվել Վարդան Արևելցու աշխատության հետ[174]։

Բնագրական հենց այս սկզբունքի կիրառման շնորհիվ հնարավոր է լինում այս կամ այն երկի մեկնությունը ներկայացնել համակողմանիորեն և սպառիչ, առանց ոստումներով բացթողումների. մի հանգամանք, որ բնորոշ է Մագիստրոսի և նրա ընդգրկած քերականական մեկնիչների երկերի համար։ Ի դեպ՝ ոստումներով բացթողումները անխուսափելի են բոլոր այն մեկնողական երկերում, որոնք մեկնվողի և մեկնողի հստակ տարբերակմամբ ու հակադրությամբ՝ ասույթի և մեկնության բևեռմամբ չեն ծավալվում։

Վարդան Արևելցու քերականական Մեկնության մեջ կիրառություն գտած բնագրական հիշյալ սկզբունքը անհրաժեշտաբար առաջացել է ոչ միայն տըվյալ հեղինակի երկը համակողմանիորեն և սպառիչ մանրամասներով մեկնաբանելու պահանջից, այլև, որ կարևորն է՝ իբրև դասագիրք նախատեսված ձեռնարկների համար՝ մանկավարժական-ուսուցողական մեթոդիկայի թելադրանքից։ Հենց տվյալ գիտական ուսմունքն ամփոփող աշխատությունից մաս առ մաս մեջբերված ասույթները առանձնացած ներկայացնելիս, երբ առադրվում են դրանց նաև մեկնությունները համապատասխանաբար, ապա ամե-

---

174 Տե՛ս մեր հրատարակած «Եսայի Նչեցի, Վերլուծութիւն քերականութեան» աշխատությունը, Երևան, 1966, էջ 34։

նայն հստակությամբ ու խորությամբ, մանրամասներով ընկալելի և հեշտամարս են դառնում ինչպես մեկնվող, այնպես և մեկնող աշխատությունները. իսկ նման մեթոդիկայի արգասավորությունը, անտարակույս, բեղմնառատ է ուսումնա-մանկավարժական առումով։ Բնականաբար՝ մեր մատենագրության մեջ նման բնագրական սկզբունքի լայն կիրառությունը խոսում է նաև մեր դպրության դարավոր փորձի խելամիտ ընդհանրացման մասին։ Չմոռանանք նշելու նաև, որ այս բնագրական սկզբունքի կիրառումը առանձնապես հրատապ անհրաժեշտություն է ներկայացրել, մեր կարծիքով, առաջին հերթին այն բարդ ու խրթին առարկաների կամ գիտությունների ուսուցման համար, որպիսիք են, օրինակ՝ քերականությունը, փիլիսոփայությունը, ճարտասանությունը, աստվածաբանությունը և այլն։

Այսպիսով, նշված առանձնահատկությունները, միասին վերցրած, իրավունք են տալիս մեզ բնութագրելու Վարդան Արևելցու քերականական սույն մեկնությունը որպես արժեքավոր հուշարձան միջնադարի մեր դպրության, որը, դառնալով մեզ հասած գրչագրական բազմաթիվ ընդօրինակություններից՝ համեմատաբար լայն ընդունելություն է գտել միջնադարի ուսումնական կենտրոններում, և որով քերականական հմտություն են ձեռք բերել ուսումնականների շատ սերունդներ։

**Գ. Բնագրական կառույցի ճշտում։**— Վարդան Արևելցու հեղինակային այս Մեկնությունը, սակայն, բնագրական առումով, ունի նաև անհարթություն, որը, մեր խորին համոզմամբ, հետագա գրիչների կամ վերանորոգողների անփութության արդյունք է։ Բնագրի վերականգնողական աշխատանքի պահանջով, նրա գիտա-քննական այս հրատարակության մեջ վերացնում ենք այդ անհարթությունը։ Ինչո՞ւմն է բանը։

Վարդան Արևելցու քերականական մեկնությունն ամփոփող գրչագրերի տեքստային համադրումը մի կողմից, մյուս կողմից՝ հենց բնագրի բոլոր հատվածների ու առնչությունների քննությունը աներկբայելի են դարձնում բնագրական մի հատվածի տեղաշարժման անհրաժեշտությունն ու անխուսափելիությունը։ Համեմատական քննության համար շրջանառության մեջ դրած մեր 17 գրչագրերից 16-ը միահամուռ կերպով ունեն մի ամբողջ հատվածի ընթերցում, որն աղաղակող հակասություն է ստեղծում տվյալ բաժնի կոնտեքստի նկատմամբ՝ ամբողջությամբ վերցրած։ Խոսքը վերաբերում է Մակբայի բաժնում շաղկապին առնչվող հատվածի առկայությանը, որը, անտարակույս, նույն բնագրի տարբեր հատվածի տեղաշարժով պայմանավորված ներմուծում է հետագա գրիչների կամ, առավել հավանականությամբ՝ վերանորոգողի կողմից։

Նախ ասենք, որ Վարդան Արևելցու նման հեղինակությունը, որն իր ժամանակի ամենահմուտ քերականագետն էր հենց իր Մեկնության իսկ վկայությամբ, չէր կարող թույլ տալ այդ կարգի բնագրական աղճատում և խառնաշփոթություն, մանավա՛նդ որ շաղկապին վերաբերող այդ հատվածը ոչ թե մուրացածո կամ հետասմուտ ներդրում է, այլ իր իսկ գրչին է պատկանում։ Մեր այս համոզումը ամրապնդվում է նաև նրանով, որ իրար հետ համեմատության մեջ դրված գրչագրերը շաղկապի գլխում՝ նրա էջերից մեկի տողատակում միասնաբար տալիս են հետևյալ ծանոթագրությունը. «Քիչ մի ի մեկնութենէ շաղկապիս գրեցաւ ի մակբայն, զայն անդ ընկալ» (ձեռագրեր՝

№ 2371, թ. 59ա, № 2526, թ. 52բ, № 2331, թ. 68ա, № 2381, թ. 15բ և ուրիշներ)։ Նման ծանոթագրությունը ինքնին չափազանց նշանակալի է. նախ՝ եթե ինքը Վարդան Արևելցին կատարած լիներ շաղկապին վերաբերող հատվածի տեղաշարժը, ապա ծանոթագրություն տալու անհրաժեշտություն չէր ունենա։ Երկրորդ՝ ծանոթագրության մեջ ասվում է «գրեցաւ»— անց. կատարյալի 3-րդ դեմքով, և ոչ թե՝ «գրեցի»—անց. կատարյալի առաջին դեմքով, հետևաբար հենց լեզվական կարևորագույն այս փաստով էլ ակնարկվում է, որ այդ փոփոխությունը կամ տեղաշարժը հեղինակային չէ։ Երրորդ՝ պատահական չէ, որ այս ծանոթագրությունը տրված է ոչ թե շաղկապի բաժնի որևէ էջի տողատակում, այլ հենց այն էջի տողատակում, որտեղից տեղաշարժված և առաջ է տարված խնդրո առարկա հատվածը՝ հանիրավի զետեղված լինելով մակբայի բաժնում։ Իսկ դա նշանակում է, որ գրիչները իրենց ժամանակին նկատել են այդ անհարիրությունը։ Այս բոլորից հնարավոր է ենթադրել, որ սկզբում մի գրիչ անիմացաբար կատարել է այդ տեղաշարժը, իսկ հետագա գրիչները, որ արտագրել են այս գաղափարատիպ օրինակից, բնագրի շարունակությունը իսկ և իսկ իր տեղում ընթերցողին հուշելու մտահոգությամբ տվել են այդ ծանոթագրությունը։ Բայց մենք հակված ենք ավելի մտածելու, որ նախապես ճիշտ ընդօրինակված լինի. գրչագրի վերանորոգման ժամանակ շաղկապին վերաբերող բաժնից մի թերթ պատահաբար կամ անփութության պատճառով առաջ ընկած և տեղադրված լինի հենց մակբայի բաժնում, որով և ստացվել է հեղինակային բնագրի աղճատում կամ խառնաշփոթություն։ Համենայն դեպս՝ ինչպես էլ մտածելու լինենք՝ փաստը մնում է փաստ, որ դա հետագայի խաթարում է և ոչ թե հեղինակային ընթերցում։ Մեր այս ենթադրության օգտին է խոսում ծանրակշիռ մի փաստ ևս, որն իսպառ փարատում է ամեն տեսակի տարակուսանքներ. համեմատական քննության համար շրջանառության մեջ մեր դրած գրչագրերից ունենք միայն մեկը, որը շաղկապի այդ հատվածը ոչ թե մակբայի բաժնում է պահպանել, այլ՝ շաղկապի բաժնում՝ իսկ և իսկ ա՛յն տեղում, ուր պետք է լիներ այդ ընթերցումը. ընդ-սմին ուշագրավն այն է, որ այդ արվել է ոչ թե բնականոն կերպով՝ ըստ գաղափարատիպ օրինակի արտագրման, այլ բնագրագետ գրչի խելամիտ միջամտությամբ: Ինչպես մակբայի, այնպես և շաղկապի համապատասխան ընթերցումների և՛ թուղթը, և՛ գրության չափսերը իրենց տողային բացատով (ինտերվալով) նույնական չեն քերականական սույն երկի թղթի և տողային հարաբերությունների հետ. ավելին, խնդրո առարկա տեղերում թղթերի ուշադիր զննումը լույսի տակ ակնհայտ կերպով մատնում է հետագա միջամտություն՝ մանավա՛նդ, որ տողերի արանքում երևում են նաև նախկին՝ սկզբնական գրությունների հետքերը, որոնք իրենց ընթերցմամբ հար և նման են մեր օգտագործած մյուս գրչագրերին։ Նշանակում է՝ սկզբում բնագրի կառուցվածքը լրիվին համապատասխանելիս է եղել մեր օգտագործած մյուս գրչագրերի բնագրական կառույցին, սակայն հետագայում բնագրագետ գրիչը գլխի ընկնելով, որ խնդրո առարկա հատվածները բնագրական խառնաշփոթություն ու աղաղակող հակասություն են ներկայացնում, միանգամայն ճիշտ կերպով ուղղել է դրանք՝ նոր թերթիկների վրա կրկին անգամ գրելով տեղաշարժման կարոտ հատվածների համապատասխան ընթերցումները (համեմատի՛ր B ձեռագրի 157բ—158բ և 161բ—162բ երեսները և գրությունները)։

Մենք էլ, ելնելով վերը նշված բոլոր նկատառումներից, շաղկապին վերա-

քերող միճելի Հատվածի ընթերցումը տալիս ենք իր բուն տեղում, այսինքն՝ ճիշտ այն տեղում, ուր պետք է լիներ դա Վարդան Արևելցու իսկ Հայեցողությամբ ու Հեղինակմամբ։

«Մեկնութիւն քերականի» քննական բնագրում տարընթերցումները ցույց տվող պայմանական լատինական տառերը համապատասխանում են մեր օգտագործած հետևյալ գրչագրերին.

*ա) Մաշտոցի անվան Մատենադարան.*

A=№ 2371, թթ. 7ա—71ա։ Բառարանագրական երկերի և քերականական մեկնությունների ժողովածու։ Գրիչ՝ Ստեփանոս։ Ժամանակ՝ 1357 թ., թերթ՝ 292։ Բոլորգիր։

B=№ 1115, թթ. 124ա—171ա։ Քերականական և այլ նյութերի ժողովածու։ Գրիչ՝ Գրիգոր Տաթևացի։ Ժամանակ՝ 1408—1409 թթ.։ Թերթ՝ 225։ Բոլորգիր։

C=№ 2526, թթ. 16ա—62ա։ Քերականական և փիլիսոփայական երկերի ժողովածու։ Ժամանակ՝ ԺԵ դ.։ Թերթ՝ 117։ Բոլորգիր։

D=№ 267, թթ. 247ա—311բ։ Բառարանագրական երկերի, քերականական մեկնությունների և իմաստասիրական երկերի ժողովածու։ Գրիչ՝ Ղուկաս Արղնեցի։ Ժամանակ՝ 1609—1613։ Թերթ՝ 485։ Բոլորգիր։

E=№ 2372, թթ. 7ա—78բ։ Բառարանագրական երկերի և քերականական մեկնությունների ժողովածու։ Գրիչ՝ Տեր Անդրիաս։ Ժամանակ՝ ԺԲ դ.։ Թերթ՝ 355։ Բոլորգիր։

F=№ 2369, թթ. 10ա—171բ։ Բառարանագրական երկերի և քերականական մեկնությունների ժողովածու։ Գրիչ՝ Թորոս։ Ժամանակ՝ 1614։ Վայր՝ Կ. Պոլիս։ Թերթ՝ 275։ Բոլորգիր։

G=№ 2331, թթ. 33ա—76ա։ Բառարանագրական երկերի, քերականական և իմաստասիրական մեկնությունների ժողովածու։ Ժամանակ՝ ԺԷ դ.։ Թերթ՝ 308։ Նոտրգիր։

H=№ 2379, թթ. 8ա—60ա։ Բառարանագրական երկերի, քերականական, իմաստասիրական մեկնությունների և այլ նյութերի ժողովածու։ Գրիչ՝ Պողոս Տիւրիկցի։ Ժամանակ՝ 1621—1624։ Վայր՝ Կ. Պոլիս, Սպահան։ Թերթ՝ 310։ Նոտրգիր։

I=№ 2381, թթ. 5ա—63ա։ Բառարանագրական երկերի և քերականական մեկնությունների ժողովածու։ Գրիչ՝ Ստեփանոս քհնյ., Մարտիրոս չաՀրնկալ։ Ժամանակ՝ 1631։ Վայր՝ ՅովՀաննավանք։ Թերթ՝ 325։ Բոլորգիր։

J=№ 2330, թթ. 8ա—34ա։ Տոմարագիտական, բառարանագրական և քերականական ու փիլիսոփայական երկերի ժողովածու։ Գրիչներ՝ Ստեփանոս Մշկոցի և Վրդանես դպիր։ Ժամանակ՝ 1633, 1641—1643։ Վայր՝ Կաֆա։ Թերթ՝ 231։ Նոտրգիր։

K=№ 1461, թթ. 82ա—189բ։ Բառարանագրական երկերի, քերականական մեկնությունների և այլ նյութերի ժողովածու։ Ժամանակ՝ ԺԸ դ.։ Թերթ՝ 201։ Նոտրգիր։

L=№ 2462, թթ. 8ա—20ա (վերջից պակասավոր)։ Բառարանագրական, քերականական և այլ նյութերի ժողովածու։ Ժամանակ՝ ԺԷ դ.։ Թերթ՝ 102։ Նոտրգիր։

M=№ 8537, թթ. 3ա—60ա։ Քերականական երկերի ժողովածու։ Գրիչ՝ Յակոբ դպիր։ Ժամանակ՝ 1620։ Թերթ՝ 138։ Բոլորգիր։

### բ) Բրիտանական թանգարանի հայկական ձեռագրերի հավաքածու.

N=№ 5273, թթ. 7—100։ (Մանրամասնավեն № 425)։ Քերականական, բառարանագրական և այլ նյութերի ժողովածու։ Ժամանակ՝ անհայտ։ Նոտրգիր։ Ձեռագրի մանրամասն նկարագրությունը տե՛ս F. C. Conybeare, A Catalogue of the British Museum, London, 1913, p. 308.

### գ) Վիեննայի Մխիթարյան միաբանության մատենադարան.

O=№ 337, թթ. 5ա—63բ։ (Մանրամասնավեն՝ № 424)։ Մանրամասն նկարագրությունը տե՛ս Յ. Տաշեան, «Ցուցակ ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա», 1895, Վիեննա, էջ 782—783։

P=№ 1130, թթ. 69բ—109բ։ (Մանրամասնավեն՝ № 424)։ Մանրամասն նկարագրությունը տե՛ս Հ. Ոսկեան, «Ցուցակ հայերէն ձեռագրաց Մխիթարեան Մատենադարանին ի Վիեննա», հ. Բ, 1963, Վիեննա, էջ 791—792։

Լ. Գ. ԽԱՉԵՐՅԱՆ

## ՅԱՂԱԳՍ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ ՔԵՐԱԿԱՆԻՆ[1], ԶՈՐ ԱՐԱՐԵԱԼ Է ՄԵԾ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ ՎԱՐԴԱՆԱՅ Ի ԽՆԴՐՈՅ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՀԱՅՈՑ ՀԵԹՄՈՅ

[ԲԱՆ]

«Քերականութիւն է հմտութիւն, որք ի քերթողացն և ի շարագրացն իբրու բազում անգամ ասացելոց: Եւ մասունք են նորա վեց»:

[ՄԵԿՆՈՒԹԻՒՆ]

*Ոմանք ներհակք ասացին, եթէ փոխանակ փարթամ երևեցուցանելոյ զքերականութիւնն, նա ի յանբանութիւն և ի վատթարութիւն ածիք, զի ոչ ասացիք գիտութիւն, այլ հմտութիւն, այսինքն՝ ծանաւթութիւն կամ տեղեկութիւն. զի տեղեկութիւն չէ բոլորովին գիտութիւն։ Առ որ ասեմք, եթէ գիտութեամբ ասաց զարուեստն. զի թէ հարցանեն ընդ քեզ անուն կամ բայ, որ է բանի մասն, նա հմտութեամբն, որ է հնմտութիւն, որ մտես ի յարուեստն զերդ ի գետի հուն, որ լինի հնմտութիւն։ Նա հնմտութեամբն զքերթողացն և զշարագրացն տաս զպատասխանին զերդ զգիտուն, ապա թէ ոչ՝ դու ի նախնեացն անգիտացն անկար ի յոճ և ի սովորութիւն ըստ անասնոցն երթալոյ ի սովորական տեղիս։ Եւ վասն այնոր ասի* հմտութիւն, *զի կատարեալ գիտութիւնն աստուծոյ միայն է. իսկ*

---

1 J *քերականութեան մեկնիչ* փխ *Մեկնութեան քերականին*
1 B *մեկնեալ* փխ *արարեալ*
1—3 FK չիք՝ *լրիվ տողերը։*
1—2 E *Մեկնութիւն քերականին ի Վարդան վարդապետէ արարեալ* փխ *Յաղագս Մեկնութեան քերականին, զոր արարեալ է մեծ վարդապետին Վարդանայ*
1 M չիք՝ *մինչև 74-րդ էջի 7-րդ տողի «ասէ» բառը ներառյալ։*
2 B *վարդապետն* (M) *Վարդան*
2 J *աւրինեալ է (ի խնդրոյ)*
5 G *երականութիւն* փխ *Քերականութիւն*
5 C *քերթողաց*
5 J *շարագրաց*
6 F *մասուք*
6 EFO *սորա* փխ *նորա*, JK *նորայ*
8 B *մանք* փխ *Ոմանք*
8 P *ներհակ*
8 K *փոխանակ փոխանակ* (կրկն.)
9 ELNP *զքերականութիւն*
9 J *նայ*
10 J *ասացի*
10 K *և մտութիւն* փխ *հմտութիւն*
10 E *ծանաթութիւն*
11 K չիք՝ *զի տեղեկութիւն*
11 K *գիտութեամբ*
13 AB *մասն (բանի)*
13 FK *բանին*
13 J *նայ*
13 K *հմտութիւն*
14 E *զերթ*
14 K *հմտութիւն* փխ *հնմտութիւն*
14 J *նայ*
14—15 K *հմտութեամբ*
15 J *զշարագրողացն*, P *զշարագրաց*
15 E *զերթ*, J *զէրտ*
15—16 C *զգիտուն*
16 P *ապայ*
16 C չիք՝ *անգիտացն*
16 CH *արկար* փխ *անկար*
17 K *վասն այնիր*
18 ACDEFGHIJKNOP *գիտութիւն*
18 J *ի (միայն)*

*մարդկանս մասնաւոր միայն է գիտութիւն՝ կամ բանիւ կամ կոկ, զոր պարտ է կրթիլ ուսումնասիրացն ի բանս։*

[ԲԱՆ]

«Նախ՝ վերծանութիւն ներկուռ ըստ առոգանութեանցն»:

[ՄԵԿՆՈՒԹԻՒՆ]

*Գիտութիւն կամ բանիւ պիտի ուսումնասիրացն կրթիլ ի բանս. և զոր ինչ ասէ կամ գրէ՝ նա տասն առոգանութեամբքն լինին՝ շեշտիւն կամ բթիւն և կամ այլովքն ի տասանցն՝ առ որ պիտանանայ ի բանն։*

[ԲԱՆ]

«Երկիր՝ զրուցատրութիւն ըստ ներգոյս քերթողական յեղանակս»:

[ՄԵԿՆՈՒԹԻՒՆ]

*Որ արուեստաւս զարուեստիս զբառսն տանիս, այսինքն՝ քերթողական եղանակաւս։*

[ԲԱՆ]

«Երիր՝ լեզուաց և ճնազէտ պատմութեանց առձեռն բացատրութիւն»:

[ՄԵԿՆՈՒԹԻՒՆ]

*Որ զազգին հնացեալ Կորճայքն[2] և զծռութիւնն ի լեզուացն հանէ, զի ի հնոցն ի վեր է հաստատած քերականութեամբ, որ է առձեռն բացատրութիւն ի յանուանցն ճշմարտութիւն, որպէս զբերանունն, զերդ զկայծառ և կամ զշաքր եռաց, որ են բերանունք։*

1 K *մարդկան սա* փխ *մարդկան*
1 K *մասնաւորի*
1 P *բանի*
6 P *ուսումնասիրաց*
7 J *նայ*
7 JP *առոգանութիւնք*
8 D *բըթիւն*
8 CDKY *պիտանայ*
10 D *զրուցատըրութիւն*, K *զրոյցատրութիւն*, P *զըրուցատրութիւն*
10 B *ըստ ներոյս*
10 AFKNO *քերդողական*
10 J *եղանակս*
12 CDJ *զբառն*
12—13 AEFGHKNO *քերդողական*
13 ACDEFHIKNOP *յեղանակաւս*, G *եղանակօս*
15 IN *հնազէտ*
17 CDGINP *զհնացեալ*, K *զհնացեա*
17 AINOP *կորճեաք*, C *կորճեացք*, M *կորճեացն*, FK *կորճեացքն*, I *կորճեան*, BEGH *կորճեաքն*
17 JP *զծռութիւն*
19 F չիք՝ *ի*
19 P *անուն* փխ *զբերանունն*
19 N *ի յանուանց*
20 CD *զշաքար եռաց*, K *զշաքրկառ*
19 FO *Ձեռագրերը «բացատրութիւն» բառից հետո ունեն հետևյալ խառնակ ընթերցումը մինչև էջ 75-ի 18-րդ տողը ներառյալ.*

*(Բան)*

*«Չորիր՝ըստ ստուգաբանութեան գիւտ»։*

*(Մեկնութիւն)*

*Անուանցն ճշմարտութիւն, որպէս զբերանունն զերդ զկայծառ կամ զշաքր եռաց, որ են բերանունն։*

*(Բան)*

*«Հինգերիր՝ համեմատութեան տեղեկութեան»։*

*(Մեկնութիւն)*

*Որ համեմատես զնոր կտակարանսն ընդ հինն և կամ թէ ասեն Դաւթի կամ Դաւթայ, կամիս զազնիւն ասես. և որ պէս դէմընդիմելն համեմատելն։*

*(Բան)*

*«Վեցերիր՝ դատումն քերթածաց»։*

[ԲԱՆ]

«Չորիր՝ ըստ ստուգաբանութեան գիտ»:

[ՄԵԿՆՈՒԹԻՒՆ]

*Որ համեմատես զնոր կտակարանսն ընդ Հինն և կամ թէ ասես Դաւթի կամ Դաւթայ, և կամիս զազնիւն ասես։ Եւ որպէս դէմընդդիմելն է համեմատելն։*

[ԲԱՆ]

«Հինգերիր՝ համեմատութեան տեղեկութիւն»:

[ՄԵԿՆՈՒԹԻՒՆ]

Դատելն *«սահմանել» ասէ զասացուածսն, որ երբ գտնուս զումեք շարագրած, դատես՝ եթէ ուղղափառի՞ է, թէ՞ ոչ, կամ թէ բժշկական է, թէ՞ աստեղաբաշխական։*

[ԲԱՆ]

«Վեցերիր՝ դատումն քերթածաց. նա և լաւագոյն է յամենեցուն, որք ըստ ներարհեստիս են»:

[ՄԵԿՆՈՒԹԻՒՆ]

*Որպէս թէ այս բանս առաւել պիտանի է այս արուեստիս հետևողացն և գիտողացն քան զամենայն։*

ՅԱՂԱԳՍ ՎԵՐԾԱՆՈՒԹԵԱՆ

[ԲԱՆ]

«Վերծանութիւն է մասն քերթածաց»:

---

*(Մեկնութիւն)*

*Նաև լաւագոյն է ամենեցուն, որք ըստ ներարհեստիս են։*

*Դատելն սահմանել ասէ զասացուածսն, որ երբ գտնուս զումեք շարագրած՝ դատես՝ եթէ ուղղափառի՞ է, թէ ոչ, կամ թէ բժշկակա՞ն է, թէ աստեղաբաշխական, որպէս թէ այս արուեստիս հետևողացն քան զամենայն։*

2 P *ըստուգաբանութեան*
5 K *և կամ ազ* փխ *և կամիս*
5 P *դէմընդ ելնէ* փխ *դէմընդդիմելն է*
8 ABCDEFGHILMNOP *տեղեկութեան*, *հմմտ.* Ն. Ադոնց, *էջ 1*, K չիք՝ *տեղեկութիւն*
10 N *յերբ*
10 I *զումէք*, N *զումեզ*
11 K *ուղափառի*
11 P *եթէ* փխ *է, թէ՞*
11 J *եթէ* փխ *թէ՞*
11 E *բժըշկական*, K *բժշկան*
12 J *աստղաբաշխական*
14 K *վեցիր*
14 EK *քերդածաց*
14 ABCDEFGHIJKLMNOP *ամենեցուն*, *հմմտ.* Ն. Ադոնց, *էջ 2*։
15 HK *ըստ ներարհեստին*
15 HK չիք՝ *են*
17 K *արհեստիս*
18 K չիք՝ *և գիտողացն*
18 P չիք՝ *քան*
19 K չիք՝ *լրիվ տողը*։
19 L *ազագս*
19 L *երծանութեան*
21 L *երծանութիւն*
21 P *մասն մասն* (կրկն.)
21 G *քերթածացն*, K *քերծայ*

[ՄԵԿՆՈՒԹԻՒՆ]

Վերծանութիւնն *«գիտութիւն» ասի, իսկ քերականացն՝ մասնաւոր գիտութիւն, զի աստուծոյ գիտութիւնն միայն է ընդհանուր, իսկ մարդկային գիտելս ամենայն մասնաւոր է՝ շարագրածաց և ժամանա[կա]գրածաց։*

[ԲԱՆ]

«Կամ շարագրածացն անվթար յառաջբերութիւն»:

[ՄԵԿՆՈՒԹԻՒՆ]

*Կրկին գիտութիւն է՝ անսխալ տարբերութիւնն յասելն և ի լսելն։*

[ԲԱՆ]

«Եւ վերծանելի է ըստ ենթադատութեան»:

[ՄԵԿՆՈՒԹԻՒՆ]

Ենթադատելն *«ենթակայ դատել» ասի, և* դատելն՝ *քննել զենթակայէ իմն է։ Քննէ և զկերպէն տայ զպատասխանին և զխաւսսն ի գովեստ կամ ի պարսաւ։*

[ԲԱՆ]

«Ըստ առոգանութեանցն, ըստ տասանց արուեստիցն»:

[ՄԵԿՆՈՒԹԻՒՆ]

*Եւ ահա աստ պարզէ զվերին յիշեալ ենթադատութիւնն, որ դատես և պարզես զբանն վասն ո՛ւմ որ լինի, և բաժանես ըստ մարդոյն ոճոյն՝ եթէ գոռոզ և եթէ ողոք։*

[ԲԱՆ]

«Ըստ տրոհութեան»:

---

2 NP *Վերծանութիւն*
2 P *գիտութիւնն (ասի)*
2 G *քերթականացն*
3 P չիք՝ *աստուծոյ*
3 P *գիտութիւն (միայն)*
3 J *ընթանուր*
4 K *շարագրածա*, N *շարագրածացն*
7 K *շարագրածաց*
9 GHKP *անսղալ*
9 NP *տարբերութիւն*
11 CD *ենթակայութեան*, J *ենթայ-դատութեան*
13 J *ենթայդատելն*, P *ենթադատել*
13 CE *ենթակա (դատել)*
13 B *աս է*
13—14 J *զենթակայ (իմն է)*, P *զի ենթակայ* փխ *զենթակայէ*
14 J *զկէրպէն*
14 EOP *տա*
14 CK *զխօսն*, DLP *զխաւսն*
14 P *և* փխ *ի*
17 K *արուեստիս*
19 NP *ենթադատութիւն*
20 M *պարզէս*
20 H չիք՝ *որ (լինի)*
21 H *և (եթէ գոռոզ)*
21 B *թէ (գոռոզ) և թէ (ողոք)*
21 E *ողոզ*

[ՄԵԿՆՈՒԹԻՒՆ]

*Որ տաս այնմ, որում և կամիս՝ ըստ ոճոյն, որպէս և վերագոյն ասացաւ։*

[ԲԱՆ]

«Քանզի յենթաղատութենէն՝ զզաւրութիւնն, իսկ յառոգանութենէն՝ զարուեստն»։

[ՄԵԿՆՈՒԹԻՒՆ]

*Ըստ արուեստաւոր խոհակերին, զի* խոհակերն *«մսագործ» ասի, որ իմաստութեամբ բաժանէ զոչխարին յաւդուածսն. և ամէն յաւդուած զիւր միսն ունենայ և չելնէ այնոր միսն ի յայն, կամ այնոր՝ ի յայն, և միւս անդամոյն՝ ի միւս այլ անդամն։ Այս աւրինակաւս լինի ընթերցաւղն և խաւսեցաւղն, նաև գրագիրն ևս։*

[ԲԱՆ]

«Իսկ ի տրոհութենէն զպարունակ միտսն տեսանեմք»։

[ՄԵԿՆՈՒԹԻՒՆ]

*Այսպէս բաժանես զգրոյցսն, որ չխառնես և աւերես զբանն։*

[ԲԱՆ]

«Զի զողբերգութիւնն դիւցազնաբար վերծանեսցուք»։

[ՄԵԿՆՈՒԹԻՒՆ]

Դին *«աստուած» ասի, և* դիւցազնաբարն՝ *«աստուածաբար», որպէս և գրեալ էր, յորժամ որ սպանին տիտանեանքն զԴիոնեսիոս*[3] *աստուածազգին և անդամ-անդամ կոտորեցին և յաւշեցին, նա տանէին զոչխարսն*

---

2 L *և յայնմ*
2 J *և որպէս* (չիքուն)
2 M *վէրագոյն*
3 K *ասացաք*
5 N *յենթադատութեանն*, P *յէնթադատութենէն*
5 N *զաւրութիւն*, O *զզաւուութիւնն*, P *զզաւրութիւն*
5 E *առոգանութենէն*
6 CD *զարուեստ*, P *զարուեստսն*
9 G *յադուածսն*, B *զադուածսն*
9 G *(ամէն) յադուած*
10 P *ունենա*
10 I *չէլնէ*
10 D *միսըն (ի յայն)*
10 J *(միսն) այն* փխ *ի յայն*
10 C չիք՝ *կամ այնոր՝ ի յայն*
10 E *այնորն (ի յայն)*
11 J *անգամոյն*
11 P *(այլ) անգամ*
11 K *ընթերցողն*, M *ընգեցաւղն*
12 JL *նայև*
14 L *տրոհութեննեն*
16 O *բաժանեն*, L *բաժանէ*
16 P *զրոյցսն*
16 C *չի խառնես*
16 P *աւիրես*
18 N *զողբերգութիւնս*
18 E *դիցազնաբար*
20 B *աստուածս (ասի)*
20 ABDEFGHIJKLMNOP *դիցազնաբարն*
21 CD *տիտանեաքն*, P *տիտիեանք*
21 EFJKLNOP *զԴիոնէսիոս*, D *Դիոնէսիոս*
22 CD *անդամանդ* փխ *անդամ-անդա*
22 J *նայ*
22 K *ել ոչխարսն* փխ *զոչխարսն*, L *զոչխարին*

*ի զո՛ն և յաւշէին անդամ-անդամ, և գոռոզաձայն լային աստուածաբար և ասէին, թէ՝* «Ձերդ զfեզ ո՞վ լինի», *և կամ՝* «Ո՞վ լնու զfn տեղն»:— *Եւ ա՛յդ է դիւցազնաբարն՝ թէ իմանաս։*

[ԲԱՆ]

«Իսկ զկատակերգութիւնն՝ աշխարհաւրէն»:

[ՄԵԿՆՈՒԹԻՒՆ]

Կատակն *բերանում է.* «*կատակել*» *ասէ, և* կատակելն *աշխարհաւ-րէն ասել պարտ է։ Եւ կարէ առանց քերականութեան ասիլ, և չէ՛ սնիկ առոգանութեանցն։*

[ԲԱՆ]

«Եւ զդամբանականն՝ ուժգնակի»:

[ՄԵԿՆՈՒԹԻՒՆ]

*Զի զբաւթաձայնն կանչելով ասեն և անհեթեթ ձայնս արձակեն՝ վա-յիւ և կոռոչելով։*

[ԲԱՆ]

«Եւ տաղն fաջոլորակի»:

[ՄԵԿՆՈՒԹԻՒՆ]

*Տաղին եղանակն շարայարմար պիտի, որ քաղցր գայ և՛ ելն, և՛ էջն՝ ի տեղի և ուղղորդ, և զբառն՝ չափաւոր ըստ չորք արուեստին։ Եւ յորժամ բառն և եղանակն և միտքն և տանցն չափն ի յոճի լինին՝ նա ապա լինին տաղքն պատշաճագոյնք և դիպաւորք։*

[ԲԱՆ]

«Եւ զfնարական fերթուիւնն ներդաշնակապէս»:

---

1 JL *ի զոհսն*
1 N *ադամ-անդամ*
1 K *զոռաձայն*
2 AO *ասեին,* L չիք՝ *և ասէին*
2 DJ *Ձերթ*
2 K *լինիւ* փխ *լնու*
2 J *զքոյ*
3 P *այտ*
3 J *իմանայ,* K *իմանա*
5 N *զկատակերգութիւնս*
5 I *աշխարհաւրէն*
7 ABEFGHIKLMNO *կատակել (ասէ*
7 N *կատակելնս (աշխարհաւրէն)*
8 E *սընիկ*
9 E *առոգանութեանց*

11 K *զդամբանակն*
13 K *զբաւթայայնն*
16 DEGHKLM *զտաղն*
18 ABCDEFGHIJKLMNOP *յեղանակն*
18 F *շարաարմար,* K *շարմ այսինքն որ*
19 ACDEFGHIJKLMNOP *ըղորդ*
19 N *յարուեստին*
20 P *եղանական*
20 B *չափքն,* K *չափըն*
20 J *նայ*
21 JP *ապայ*
21 K *քաղք* փխ *տաղքն*
23 ACDFGHKMOP *քերդութիւնն,*
N *քերդութիւն*
23 F *ներդաշնապէս*

